# ՇՆՈՐՀԱՎՈՐ ՆՈՐ ՏԱՐԻ

ՍԱՐՄԵՆ

Շնորհավոր նոր տարի,
Հայր Ստալին սիրելի,

Չորս կողմ հնչում են երգեր,
Ձմեռ պապին է եկել,
Բերել է մեզ տոնածառ,
Վրան՝ լույսեր անհամար,
Հազար տեսակ խաղալիք՝
Մեկը մեկից գեղեցիկ:

Տոն է այսօր մեր երկրում.
Մենք պարում ենք ու երգում,
Հետո ձյան մեջ վազվզում,
Խաղում ենք ու մարզվում:

Շողում է մեր կրծքերին
Փոքրիկ, սպիտակ աղավնին:
Մենք մեր ազատ աշխարհում
Խաղաղություն ենք սիրում:
Դու ես բերել, Մեծ Ստալին,
Խաղաղության նոր տարին:

Եվ մենք սրտի խորքերից
Բացագանչում ենք նորից.
— Շնորհավո՛ր նոր տարի,
Հայր Ստալին սիրելի:

ՆԿ. Լ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ






*Լենինի–Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆ

# ՄՈՍԿՈՎՅԱՆ ԵՐԳ

*ԱՇՈՏ ԳՐԱՇԻ*

«Վլադիմիր Իլյիչ Լենինը՝ կոմսոմոլի խնդիրներին նվիրված ճառով հանդես եկավ այս շենքում 1920 թ. հոկտեմբերի 2-ին ՌԿԵՄ 3-րդ Համառուսական համագումարում». Մակագրություն Լենինյան կոմսոմոլի անվան թատրոնի շենքի վրա:

Շողում է փառքն էլ վաղեմի,
Մոսկվա՛, հպարտ քո շենքերի,
Այստեղ թնդաց մեծ Լենինի
Խոսքը՝ երգ մի ամպրոպների:

Պալատներին նա պատերազմ,
Խրճիթներին խաղաղություն
Ազդարարեց-լուսեղ երազ,
Ե՛վ կյանք, և՛ փառք, և՛ պատմություն:

Տափաստաննե՛ր լայն, ռուսական,
Դաշտե՛ր, գետե՛ր, ծովե՛ր, լերի՛նք,
Եղաք վկա, հանդիսական
Նրա գործին, խոսքին մրրիկ:

Փոթորկեց նա բանակներին,
Որ առհավետ որդին ջանքի
Տերը դառնա իր հերկերի,
Իր հանքերի ու վաստակի,

Որ սերունդն իմ երիտասարդ
Հաշտ, համերաշխ աշխատանքով
Աղմկի հանց հեղեղ ազատ,
Հար շողշողա հաղթանակով,

Որ խուլ, տխուր լեռնաստանում
Ծնված հովիվ մի պատանի,
Դառնա երգիչ մի մեծանուն,
Կյանքն իր դարձնի երգ գեղանի:

Երբ այս շենքից լենինաշունչ
Իջնում էի ես սանդուղքով,
Ոտքիս տակի քարերը մունջ
Բարբառեցին սրտիս երգով:

— Կա՛նգ առ, պոետ, մեզ համբուրի՛ր,
Սուրբ հետքերն ենք պահում նրա,
Ով շողալով արեգակվեց
Ժողովրդի բախտի վրա:

Վառվում էր աստղը լուսավետ,
Շողերի տակ նրա անմար
Ծունր իջա երգերիս հետ,
Համբուրեցի քարերն անմահ:





# ԼԵՆԻՆԻ ՀԱՅՐԵՆԻՔՈՒՄ

Վոլգայով ընթացող շոգենավը մոտենում է Ուլյանովսկ քաղաքին: Նավախցերը դատարկվում են: Բոլոր ճանապարհորդները խմբվում են տախտակամածի վրա: Ամեն մեկն ուզում է ավելի շուտ տեսնել այն քաղաքը, ուր ծնվել է Վլադիմիր Իլյիչ Լենինը:

Ահա և Ուլյանովսկը: Եվ առաջինը, որ դեռ հեռվից տեսնում ես՝ Լենինի հոյակապ հուշարձանն է, որ կառուցված է Վոլգայի թեք զառիվայրի վրա: Նա բարձրանում է քաղաքի կանաչ այգիների և նավերի անհամար քարավաններով ծածկված լայնահուն գետի վրա:

Սովետական ամեն մի մարդու համար թանկ է այն ամենը, ինչ կապված է Լենինի հիշատակի հետ: Սովետական Միության բոլոր կողմերից Ուլյանովսկ են գալիս մարդիկ, այցելելու այն տունը, որտեղ ապրել է Վլադիմիր Իլյիչն իր մանկության տարիներին: Այդ փոքրիկ փայտաշեն տունը գտնըվում է Լենինի փողոցի վրա:

Նոր էր լրացել Վոլոդյա Ուլյանովի ութ տարին, երբ նրանց ընտանիքը տեղափոխվեց այստեղ: Առաջին հարկում մեծահասակների սենյակներն էին, իսկ վերնաշենքում ապրում էին երեխաները՝ Վոլոդյան, նրա եղբայրներն ու քույրերը: Տան ետևում կար մրգի մի մեծ այգի, որտեղից մի ճանապարհ էր գնում դեպի Սվիյագի գետի ափը:

Վոլոդյան շատ շուտ սովորեց լող տալ: Ամռանը նա իր եղբայրների հետ ամեն առավոտ վազում էր դեպի գետակ՝ լողանալու: Սիրում էր այգում աշխատել: Մարգերն էր ջրում և ծառերը խնամելիս մեծերին օգնում:

Խորին հուզմունքով ես մտնում այն տունը, որտեղ անցել են Լենինի դպրոցական տարիները: Այժմ այդտեղ թանգարան է կազմակերպված: Սովետական ժողովուրդը սրբությամբ է պահպանում այդ տունը: Բոլոր սենյակներն ու նրանց կահավորումը խնամքով վերականգնված են և այն ձևն ունեն, ինչ որ եղել են այն ժամանակ, երբ այստեղ ապրում էր Ուլյանովների ընտանիքը:

Ահա այն սենյակը, որտեղ ապրել է

Լենինը գիմնազիայում սովորելու տարիներին: Ահա նրա մահճակալը, փոքրիկ սեղանը, որի առաջ պատրաստել է դասերը, պահարանը, իր սիրած գրքերով, կիսագնդերի քարտեզը:

Առաջին դասարանից մինչև վերջինը Վոլոդյա Ուլյանովը եղել է գիմնազիայի առաջին աշակերտը: Նրա դպրոցական օրագրում միայն հինգեր են նշանակված: Գիմնազիան նա ավարտեց ոսկե մեդալով: Տնային աշխատանքները Վոլոդյան շատ արագ էր պատրաստում: Իսկ հետո վերցնում էր շմուշկները և գնում սառցադաշտ: Դա նրա հանգստի ամենալավ ձևն էր: Երեկոները Վոլոդյան նորից գրքեր էր կարդում: Դեռ հինգ տարեկան էր, երբ սովորեց կարդալ և այդ ժամանակից սկսած կարդալը դարձավ նրա սիրած զբաղմունքը: Նա կարդում էր ոչ միայն վեպեր և պատմվածքներ: Հաճախ նրան դասագրքում եղածն էլ չէր բավարարում: Այդ պատճառով Վոլոդյան գրադարանից էլ էր օգտվում: Նա վերցնում և կարդում էր գիտական գրքեր: Նրա ընկերները գիտեին, որ նա կարող է պատասխանել ուզած հարցին և միշտ պատրաստ է օգնել դժվար խնդիրը լուծելու կամ շարադրությունը գրելու ժամանակ:



Ուլյանովների ընտանիքը շատ համերաշխ էր: Երեխաները սիրում և հարգում էին ծնողներին, լսում նրանց: Երեկոները բոլորը միասին հավաքվում էին հյուրասենյակ: Լենինի մայրը, Մարիա Ալեքսանդրովնան լավ նվագում էր դաշնամուրի վրա: Վոլոդյան կարող էր ժամերով լսել նրա նվագը: Այդտեղ, տունը ճաշասենյակ էլ ուներ: Սեղանի վրա, մինչև հիմա էլ դրված է շախմատը: Երբ Վոլոդյան մի քիչ մեծացավ, սովորեց շախմատ խաղալ: Նա շատ լավ էր խաղում: Հատկապես սիրում էր հոր հետ չափել իր ուժերը:

Այցելուները հուզված և լուռ հեռանում են այդտեղից: Նրանց հիշողության մեջ միշտ կմնան այն պահերը, որ նրանք անցկացրին այդ տանը, որտեղ ամեն ինչ հիշողություններ է արթնացնում աշխատավորների մեծ առաջնորդի, մեր պետության ստեղծողի՝ մեծ Լենինի մանկության տարիների մասին:

## ԿԱՌՈՒՑՈՒՄ

Երբ ամեն անգամ դպրոց եմ գնում,
Շենքեր կառուցող մարդկանց ձեռքերի
Մուրճերի հզոր զարկերն եմ լսում,
Նման իմ սրտի անխոնջ զարկերին:

Ու երբ սրբատաշ քարերը չքնաղ,
Դրվում են շինվող պատերի վրա,
Զգում եմ, որ մենք մի քայլով հաստատ
Կոմունիզմին ենք մոտենում անա:

*ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ*
*(Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղի դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ)*

# ԱՂՋԻԿՆ ՈՒ ԱՂԱՎՆԻՆԵՐԸ

*ԱՐԱՔՍ*

*Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ*

Ուսումնական տարվա առաջին օրն էր: Վաստակավոր ուսուցչուհի Սիրան Մարինյանը այդ առավոտ վաղ արթնացավ, հագավ իր ամենագեղեցիկ զգեստը, խնամքով հարդարեց ալեխառն մազերը ու տնից դուրս գալով, խորհրդավոր ժպիտը դեմքին՝ նորից քայլեց դեպի դպրոց տանող ճանապարհով: Մի արտասովոր ուժ նրան մղում էր առաջ: Նա քայլում էր թեթև, առույգ: Երկինքը ջինջ էր, խաղաղ, աշնան արևը դուրալի տաքացնում էր, իսկ Մարինյանը այդ չէր նկատում, ինչպես և փողոցի անցուդարձը: Այժմ նրան ուրիշ մտքեր էին զբաղեցնում՝ հայացքի դեմ բազմաթիվ ծանոթ աչքեր էին փայլատակում, հարազատ ձայներ էին լսողությունը շոյում: Նա մտովին զրկախառնվում էր աշակերտուհիների հետ ու շշնջում.

— Իմ սիրելինե՛ր...

Դպրոցի բակում և ուսուցչանոցի մոտ նա հանդիպեց իր աշակերտուհիներից մի քանիսին. կարոտով փաթաթվեց. բայց նա փափագում էր նորից տեսնել դասարանը լրիվ կազմով:

Մինչ ուսուցչանոցում Սիրան Մարինյանն անհանգիստ գնում էր, գալիս, հանկարծ հնչեց դպրոցի առաջին զանգը՝ քաղցր ու հաճելի: Նա վերցրեց նորակազմ դասամատյանը, սիրով սեղմեց թևի տակ և փութկոտ քայլերով դիմեց դեպի 7-րդ «բ» դասարանը, որտեղ առաջին ժամը հայոց լեզու էր:



Երբ Մարինյանը մոտեցավ դռանը, մի պահ քայլերը դանդաղեցրեց, ձեռքը տարավ ճակատի մազերին, նորից հարդարեց ու գորովալի ժպիտը դեմքին, բացեց դասարանի դուռը: Դասարանը՝ մի մարդու նման ոտքի ելավ, հարգանքով ողջունեց ուսուցչուհուն: Բազմաթիվ հայացքներ խորհրդավոր ժպտում էին:

Մի քանի րոպե լուռ, շփոթված Մարինյանը նայում էր: Հանկարծ նա հասկացավ, երբ նկատեց նրանց կրծքերին կարմրավառ փողկապներից բացի՝ խաղաղության սպիտակ աղավնու նշանը:

Այդ միջոցին երրորդ շարքից դուրս եկավ խելացի, խոշոր աչքերով մի աղջիկ, պիոներական ջոկխորհրդի նախագահ՝ Արմենուհին, արագ մոտեցավ ուսուցչուհուն և ասաց.

— Թույլ տվեք, ընկե՛ր Սիրան...— ապա առանձին հանդիսավորությամբ նրա կրծքին ամրացրեց սպիտակ աղավնու նշանը:

Ուսուցչուհին հուզմունքը թաքցնելու պատրվակով, շրջվեց դեպի պատը և ինչ տեսավ: Գրատախտակի վրա, սպիտակ կավիճով, խոշոր տառերով գրված էր միայն մի բառ՝ «Խաղաղություն»: Նա ոգեշնչված և հպարտ դարձավ դեպի աշակերտուհիներն ու ասաց.

— Ձեր ցանկությամբ այսօր մեր առաջին դասն սկսվեց ողջ աշխարհին հուզող «խաղաղություն» բառով:

Փոքր պաուզայից հետո նա ասաց.

— Նստեցեք...

Աշակերտուհիները նստեցին իրենց տեղերը և սպասում էին: Մի քանի րոպե լուռ, ուսուցչուհին զննող հայացքով ուսումնասիրում էր իր աշակերտուհիներին: Գրեթե բոլորը հասակ էին քաշել, արևից այրված դեմքերին մի գրավիչ ժպիտ էր խաղում: Արմենուհին փարթամացել, ավելի լրջախոհ էր դարձել, Լուսիկի դալուկ այտերը խնձորների նման կլորացել, կարմրել էին...

Նա հանկարծ սթափվեց, դարձավ նրանց գործնական տոնով.

— Ամառվա արձակուրդներին ձեզ ազատ շարադրություն եմ տվել՝ այժմ տեսնենք ով ինչի՞ մասին է գրել:

Դասարանն աշխուժացավ, հերթով սկսեցին պատմել: Մեկը պիոներական ճամբարի մասին էր գրել, երկրորդը՝ միչուրինյան անկյունի, երրորդը՝ էքսկուրսիաների, չորրորդը, թե ինչպես են պիոներները մասնակցել բերքահավաքին:

Ուսուցչուհին գոհ՝ գլխով էր անում, աշակերտուհիների վերցրած թեմաները մեկը մյուսից հետաքրքրական և կենսական էին: Ամենից վերջը ձեռք բարձրացրեց կարմիր

— Տետրդ բերե՞լ ես,— հարցրեց ուսուցչուհին:

— Այո:

— Եկ, կարդա, թող ողջ դասարանը լսի քո շարադրությունը:

Լուսիկը համարձակ գնաց կանգնեց ընկերուհիների դիմաց, բացեց տետրն ու կարդաց վերնագիրը՝

«Աղջիկն ու աղավնիները»:

Դասարանը լարված, անշշուկ սպասում էր: Ուսուցչուհին ձեռքը ծնոտին հենած, մայրական մեղմ հայացքով նայում էր Լուսիկին, որն սկսեց կարդալ:

— Կորեացի մի փոքրիկ աղջիկ էր նա, անունը՝ Լին-Դին: Սև նշաձև աչիկներ ուներ,



այտերով Լուսիկը, որը հայտնի էր դասարանում, որպես ամենալավ շարադրություն գրողը:

— Իսկ դու, Լուսիկ, ինչի՞ մասին ես գրել,— դիմեց ուսուցչուհին սիրալիր:

Աղջիկը կանգնեց.

— Ես գրել եմ ուրիշ...

Ընկերուհիները ուշադրությամբ նայեցին նրա կողմը: Ուսուցչուհին անհամբեր վրա բերեց.

— Ասա, ինչի՞ մասին:

Լուսիկը սրտանց պատասխանեց.

— Խաղաղության...

սև, երկար հյուսեր: Մայրիկի, հայրիկի, փոքրիկ եղբոր՝ Ցուն-Դինի հետ միասին ապրում էին գյուղում, մի փոքրիկ տնակում: Հայրիկը դաշտերում բրինձ էր ցանում, ամռան շոգերին դաշտերից տուն չէր գալիս:

Հանկարծ պատերազմն սկսվեց: Հայրիկը նրանցից բաժանվեց. մայրիկը տխրեց և ասաց.

— Գիտեք, իմ Լին-Դին և Ցուն-Դին, հայրիկը գնաց զավթիչների դեմ կռվելու:— Մի տարեկան Ցուն-Դին անհոգ նշաց, իսկ Լին-Դինը տխրեց. բայց երբ պարտեզ վազեց,

իր զույգ աղավնիների հետ խաղաց, ամեն ինչ մոռացավ:

Աղավնիները ձյան նման սպիտակ էին, և իրար նման: Ի՞նչ անեն, որ իրարից տարբերեն: Աղջիկը մտածեց, մտածեց, ու հնարը գտավ. մեկի քթը կարմիր ներկեց ու կոչեց՝ Կարմրաքթիկ, իսկ մյուսին կոչեց Սպիտակ:

Արևոտ գարուն էր: Երկինքը պայծառ էր: Լին-Դինենց պարտեզը կանաչել էր: Լին-Դինն ուրախ դուրս էր վազել տնից, նստել պարտեզի խոտերի վրա և մի բուռ հատիկներով կերակրում էր սպիտակ աղավնուն: Մայրիկը տանը փոքրիկ Ցուն-Դինին օրոր էր ասում, որ քնի, բայց նա լալիս էր, չէր քնում: Լին-Դինը լսում էր ու ծիծաղում չարաճճի եղբոր վրա:

Հանկարծ Լին-Դինի գլխավերևը խլացնող հռնդյուն լսվեց, ապա գետինն ուժգին ցնցվեց: Փոշին փակեց աղջկա աչքերը: Նրան վաց, թե օրը մթնեց: Նա վախից ճչաց, պավ գետնին: Երբ գլուխը բարձրացրեց և ուրջը նայեց՝ զարմացավ. ո՞ւր էր իրենց ունը... Նրա տեղը փլատակներ էին...

Լուսիկը հուզված ընդհատեց: Սպիտակ աղավնու նշանը թրթռում էր կրծքի վրա: Ընկերուհիները շունչները պահած ասես հարցնում էին՝ հետո ի՞նչ եղավ...



Լուսիկը շարունակեց կարդալ զվարթ ձայնով.

— Ժողովրդական բանակի զինվորները ազատագրեցին Լին-Դինենց գյուղը, եկան, գտան աղջկան, որը զույգ աղավնիները գրկած տխուր նստել էր իրենց տան կոտրված գերանի վրա: Նրանք փայփայեցին աղջկան ու իրենց հետ քաղաք տարան՝ հանձնեցին մանկատուն:

Լին-Դինն առաջվա նման անհոգ չէր ծիծաղում: Տխուր էր, հիշում էր իր մայրիկին, եղբորը, որոնք այժմ չկային, իսկ հայրիկից՝ ոչ մի տեղեկություն:

Լին-Դինի հետ պիոներները ընկերացան ու չթողին, որ նա մենակ մնա, շուտով Լին-Դինը հասկացավ, որ իր դժբախտության պատճառը պատերազմն է, իսկ պատերազմը սկսել են ամերիկացի հարուստները: Լին-Դինը պիոներներին շատ սիրեց, միշտ նրանց հետ էր լինում: Մի օր էլ պիոներները նրան ասացին.

— Գիտե՞ս, Լին-Դին, այդ աղավնիները, որ դու խնամում և այդքան սիրում ես՝ խաղաղության աղավնիներն են: Մենք պիոներներս, մեծերի հետ պայքարում ենք խաղաղության համար: Եկ դու էլ մեզ հետ պայքարիր...

Փոքրիկ Լին-Դինն ասես միանգամից մեծացավ. հասկացավ ու աղաղակեց.

— Ես էլ...

Ո՞վ չէր ճանաչում սև նշաձև աչքերով, փոքրիկ տոտիկներով, սև հյուսերով կորեացի աղջկան: Զույգ աղավնիները գրկած, ընկերների հետ կամ մենակ շրջում էր փողոցից փողոց, մտնում բակերը, տները, համարձակ մոտենում էր մարդկանց, պարզում էր խաղաղության դիմումը: Աչքերն այնպես էին փայլում... Նա միայն երկու բառ էր սիրով շշնջում...

— Ստալին, խաղաղություն...

Պիոներները հաշվեցին: Նա մի օրում հավաքել էր 300 ստորագրություն:

Լուսիկը վերջացրեց: Ողջ դասարանը լուռ էր: Ուսուցչուհու աչքերում արցունքներ էին շողում: Լուսիկն ուզեց նստել տեղը, ու-



ուցչուհին պահանջեց նրա տեարը: Աշակերտուհիները այդ որ տեսան, միաբերան գոչեցին.

— Հի՛նգ...

— Այո, հինգ եմ նշանակում, նրա հուզիչ, հիանալի շարադրության համար, որ օգնում է խաղաղության գործին:— Երբ ուսուցչուհին վերջացրեց, ջոկատի խորհրդի նախագահ Արմենուհին ոտքի կանգնեց և ասաց.

— Սիրելի՛ Լուսիկ, մեր բոլորի սրտից ես դու գրել: Քո հինգ թվանշանը մեր ջոկատին պատիվ է բերում: Մենք մեր մտքից չենք հանի կորեացի փոքրիկ աղջկան ու նրա աղավնիներին: Մենք էլ խաղաղություն ենք պահանջում...

Ողջ օրը Մարինյանը գտնվում էր առաջին դասի տպավորության տակ: Նրան թվում էր, թե իր շուրջը սպիտակ աղավնիներ էին նախրում և ամեն անկյունից նշանել աչքերով, սև հյուսերով փոքրիկ աղջիկն էր, փոքրիկ քաքիկով, դիմումը պարզած շշնջում՝

— Ստա՛լին, խաղաղությո՛ւն...

# ՋՈԿԱՏԱՎԱՐԸ

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

*Մի ամիս էր ինչ սկսվել էին պարապմունքները, իսկ դասարանը դեռ ջոկատավար չուներ: Մի քանի անգամ դպրոցի ավագ ջոկատավար Վարդուհին եկել էր, հետաքրքրվել ջոկատի աշխատանքով: Բայց ի՞նչ աշխատանքի մասին կարող էր խոսք լինել, երբ ինչպես Ռուբիկն էր ասում, ամառվա ընթացքում ամեն ինչ «հօդս էր ցնդել»:*

*Նույնիսկ չէր հաջողվել անցկացնել որևէ օղակային հավաքույթ:*

*— Ես ժամանակ չունեմ,— ամեն անգամ պատասխանում էր Արմենը, երբ Ռուբիկը փորձում էր նրան որևէ աշխատանք հանձնարարել,— ես ավելի կարևոր գործեր ունեմ:*

*Եվ ոչ միայն Արմենը: Ամբողջ «Արկտիկան», այդպես էին դասարանում անվանում նստարանների վերջին շարքը, հրաժարվել էր լսել Ռուբիկին, թեև նա ջոկխորհրդի նախագահն էր: Մի քանիսները նույնիսկ դադարել էին վզկապ կրել:*

*Ի՞նչ անել: Ուղղակի լաց լինելու բան էր. բայց Ռուբիկը, իհարկե, լաց չեղավ: Նա որոշեց օգնության կանչել անցյալ տարվա ակտիվին:*

*— Գագի՛կ, չէ՞ որ դու ջոկխորհրդի անդամ ես: Դու խմբկոլեգիայի նախագահն ես: Ինչո՞ւ մինչև հիմա պատի թերթի ոչ մի համար լույս չես ընծայել,—ցանկանալով խիստ երևալ, ասաց Ռուբիկը և ապա կամաց ավելացրեց.— Հիշո՞ւմ ես, ինչպես էին մեզ անցյալ տարի գովում մեր պատի թերթի համար: Ինչո՞ւ այս տարի էլ, թեկուզ և առանց ջոկատավարի, լույս չընծայենք: Մի՞թե չենք կարող:*

*— Իհարկե կարող ենք,— ոգևորված պատասխանեց Գագիկը:— Հենց վաղը կսկսեմ թղթակցություններ հավաքել:*

*Թերթը հրատարակեցին. բայց գործն էլի առաջ չգնաց: «Շուտ նշանակեին ջոկատավարին»— հաճախ էր այդ մասին մտածում Ռուբիկը և մի անգամ նույնիսկ բարձրաձայն արտահայտեց այդ միտքը:*

*— Իսկ ինչի՞ է նա պետք. առանց ջոկատավարի էլ վատ չի: Այ քեզ ձվից նոր դուրս եկած ճտե՛ր. չեն կարողանում առանց թըխսամոր ապրել:*

*Այդ ասաց Արմենը և ամբողջ «Արկտիկան» ուրախ աղմկեց նրա սրամտությունից: Բայց և այնպես ջոկատավար նշանակեցին: Նա դասարան եկավ Վարդուհու հետ միասին, դասերից հետո:*

*— Ձեզնից շատերը ճանաչում են Հրաչիկին,— ասաց Վարդուհին,— նա սովորում է 8-րդ դասարանում, գերազանցիկ է, մեր երգեցիկ խմբի լավագույն երգողը, ակտիվ կոմերիտական է: Հրաչիկը պիտի լինի ձեր ջոկատավարը:*

*Վարդուհին գնաց, իսկ Հրաչիկը մնաց դասարանում: Մի քանի րոպե բոլորը լուռ էին: Հրաչիկը մի փոքր շփոթված նայում էր տղաների դեմքերին, որոնք ասես ուսումնասիրում էին նրան: Ամեն մեկի գլխում իրենից անկախ ծագում էր այս միտքը. «Ինչպիսի՞ ջոկատավար է լինելու»:*

Վարդուհին իրավացի էր։ Շատերը գիտեին Հրաչիկին. գիտեին, որ նա ուսման գերազանցիկ է. այդ մասին մի անգամ չէ, որ գրվել է դպրոցական պատի թերթում, գիտեին նրան և որպես լավ երգող. ելույթների ժամանակ նա միշտ կանգնում է առաջին շարքի կենտրոնում։ Անցյալ տարի Հրաչիկին ընդունել էին կոմերիտմիության մեջ։ Եվ այժմ նրա դարչնագույն թավշե բաճկոնի վրա փայլում էր ոչ միայն պիոներական վզկապը, այլև կոմերիտմիության նշանը։

— Այսպես ուրեմն, ձեզնից շատերի հետ ես ծանոթ եմ,— անվստահությամբ սկսեց նա,— իսկ մյուսների հետ քիչ-քիչ կծանոթանանք։ Վաղը մենք կհրավիրենք ջոկխորհրդի նիստ և կխոսենք աշխատանքի պլանի մասին։



Ռուբիկը, Գագիկը և բոլոր մյուս երեխաները ուշադիր լսում էին Հրաչիկին։ Լռել էր և «Արկտիկան», թեև այնտեղից երբեմն ինչ որ շշուկներ էին լսվում։ Հանկարծ «Արկտիկայից» բարձր հնչեց. «Մո՜ւ-դրո՜ւ-դո՜ւ»։ Առաջին շարքում նստածների համար դա այնքան տարօրինակ էր, որ ոմանք նույնիսկ ցնցվեցին։ Ռուբիկը ճանաչեց Արմենի ձայնը և այնպե՜ս վիրավորական թվաց նրան այդ արարքը. բայց ի՞նչ կարող էր անել։

Հրաչիկը մի վայրկյան լռեց. բայց միայն մի վայրկյան։ Նա նույնիսկ չնայեց ձայնի կողմը ու շարունակեց խոսել։

Արքաղաղի կանչն ասես ազդանշան էր։ «Արկտիկայի» մյուս մասից, դասարանի մի ծայրից մյուսը թռավ թղթե սլաքը։ Հրաչիկը մռայլվեց, բայց ոչ մի դիտողություն չարեց։ Աշխատելով հանգիստ երևալ, նա շարունակեց.

— Պիոներնե՛ր, այժմ կարող եք տուն գնալ, իսկ վաղը դասերից հետո ջոկատի խորհրդի անդամները թող մնան դասարանում։ Ցտեսություն։

Հենց որ Հրաչիկը դուրս եկավ, տղաները վեր թռան իրենց տեղերից։ Ռուբիկը դիմեց դեպի Արմենը և բարձրաձայն ասաց.

— Ինչո՞ւ այդպիսի բան արիր։

— Առաջինը դեռ հայտնի չէ, թե ով արեց, երկրորդը՝ եթե այդքան ուզում ես կռվել, խնդրեմ...

Ուրախ քրքիջ լսվեց. բայց ծիծաղում էին ոչ բոլորը։ Ընդհակառակը, Ռուբիկն ավելի բարկացավ, իսկ Գագիկը խառնվեց խոսակցությանը.

— Ամո՜թ քեզ։ Ի՞նչ կմտածի Հրաչիկը մեր մասին։

— Է՜հ, թող մտածի ինչ ուզում է,— պատասխանեց Արմենը,— ասես թե ես վախենում եմ այդ երգչից։

Բայց Արմենի կատակը տղաներին դուր չեկավ, և ոչ ոք նրան չարձագանքեց։

*
* *

Երբ ջոկատի խորհուրդը պլանը կազմեց, նրանք դպրոցից դուրս եկան միասին՝ Հրաչիկը, ջոկխորհրդի անդամները և ուսուցչուհի Արշալույս Վարդանյանը։ Դրսում բարակ անձրև էր մաղում։ Անցորդները սայթաքում էին ասֆալտի վրա։

— Ափսո՜ս որ անձրև է գալիս,— խոսեց Հրաչիկը,— չենք կարող էքսկուրսիա գնալ։

— Արև օրեր դեռ շատ կլինեն,— առարկեց ուսուցչուհին։— Հո անձրևները չե՞ն շարունակվելու մինչև ձմեռ...

Անցնելով մի թաղամաս, նրանք տեսան, թե ինչպես մեծ շենքի առաջ բազմություն է հավաքվել։ Բոլորը հուզված նայում էին վերև։ Շենքի շքամուտքից դուրս վազեց մի տարիքով կին՝ սպիտակ մազերը խառնված, աչքերի մեջ՝ սարսափ։

— Ի՞նչ անեմ, ի՞նչ անեմ,— ճչում էր նա և աղաչող հայացքով նայում մարդկանց,— աստվա՜ծ իմ, նա հիմա կընկնի։

Տղաները և ուսուցչուհին վերև նայեցին։ Չորրորդ հարկի լուսամուտից մեկը բաց էր։ Պատուհանի գոգին նստել էր երեք տարեկան մի տղա և հանգիստ ներքև էր նայում։ Ահա նա չորեքթաթ մոտենում է պատուհանի եզրին։ Բազմությունը հառաչեց։ Երեխան նորից ետ գնաց։ Բոլորը թեթևացած շունչ քաշեցին։

— Շո՛ւտ, տուն գնացեք,— խորհուրդ տվեց ուսուցչուհին։

— Ա՜խ, եթե ես կարողանայի՜,— լաց լինելով պատասխանեց կինը,— սենյակը հավաքեցի և երբ միջանցք դուրս եկա, դուռը ետևիցս պատահմամբ փակվեց։ Վանիկը պառկած էր մահճակալում՝ պատուհանի մոտ. հիմա արթնացել և բարձրացել է... Բանալին մնացել է ներսը։ Ա՛խ, ի՞նչ անեմ ես։

— Հարկավոր է դուռը ջարդել,— ասաց քաղաքացիներից մեկը։

— Ո՛չ, այդ չի կարելի,— առարկեցին նրան,— երեխան կվախենա և կընկնի։

— Ներքևում սավան պահեցեք,— ասաց ուսուցչուհին,— և զանգահարեցեք հրշեջ խմբին։

Հանկարծ մի ճիչ լսվեց։

— Նայեցե՛ք, այն ո՞վ է։

Բացվեց հարևանի տան պատուհանը։ Պատուհանից դուրս սողաց թավշե բաճկոնով և պիոներական վզկապով մի երիտասարդ։ Նա զգուշությամբ կանգնեց քիվի վրա և դանդաղ սկսեց շարժվել դեպի այն լուսամուտը, ուր նստած էր երեխան։ Ոտքերը սայթաքում էին։ Երիտասարդն ստիպված էր ամեն մի քայլն անել շատ զգույշ։ Փողոցում լռություն էր տիրում։

— Տղանե՜ր,— լսվեց Գագիկի ձայնը.— Հրաչի՛կն է։

Ջոկատավարին տեսան նաև մյուս տղաները։ Ոչ ոք չէր նկատել, թե Հրաչիկը երբ էր բարձրացել չորրորդ հարկ։

Ահա Հրաչիկը հասավ ջրհորդանին։ Նա արդեն կարող էր բռնել խողովակից և մի վայրկյան շունչ քաշել. բայց երեխան Հրաչիկին նկատեց և իր թաթիկները մեկնեց նրա կողմը։ Մի շարժում ևս և նա կընկներ պատուհանից։

— Վա՜յ,— լսվեց կանացի մի ձայն և ներքևում բոլորն իրար խառնվեցին։

Երեխայի շարժումը նկատեց նաև Հրաչիկը։ Նա արագությամբ հասավ պատուհանին։ Էլի մի քայլ... Եվ բազմությունն աղմկեց։ Ջոկատավարը բարձրացավ պատուհանի գոգը, վերցրեց երեխային և թռավ սենյակ։

— Վանիկ ջա՜ն, բալիկս...— ուրախ գոչեց տատիկն ու աստիճաններով վեր վազեց։

Ջոկատավարն արդեն բացել էր դուռը և ժպտալով՝ երեխային մեկնեց նրան։ Տղաներն ուզում էին վերև բարձրանալ, բայց տեսան, որ Հրաչիկն արդեն իջնում է։ Նա թափ տվեց շորերն ու ասաց.

— Ցտեսությո՜ւն, տղանե՛ր։ Ժամը 4-ին ինձ ռայկոմ են կանչել...

Եվ նա գնաց։

*
* *

Հետևյալ օրը ջոկատում նշանակված էր աշխատանքային պլանի քննարկումը։ Դասամիջոցներին տղաները ամբողջ դասարանին պատմել էին ջոկատավարի քաջության մա-

սին։ Բոլորը հիանում էին նրանով։ Նույնիսկ Արմենը չէր կարողանում որևէ բան ասել։

— Իսկ դու ասում էիր՝ «սոխա՞կ»։ Դու ինքդ ես «սոխակ»... և ոչ էլ «սոխակ», այլ «աքլոր»,— ծաղրեց նրան Գագիկը։

Արմենը մեղավորի պես գլուխը կախեց։

— Ա՛յ, դա իսկական հերոսություն է՞,— ասաց Ռուբիկը։— Եկեք նրան խնդրենք թող հավաքույթին պատմի համարձակության մասին։



— Սարսափելի՞ էր արդյոք,— հավաքույթում ասաց ջոկատավարը և իսկույն պատասխանեց.— Այո, չեմ թաքցնում՝ սարսափելի էր. բայց հեշտ է հաղթահարել վախը, երբ գիտես, թե ինչի համար ես այդ քայլին դիմում։ Եթե ճիշտն ասե՞նք... Ուղղակի ես առաջինը մտածեցի հարևանի պատուհանով դուրս գալու մասին։ Ամեն մի կոմերիտական էլ այդ կաներ։ Եթե դուք մի քիչ մեծ լինեիք, դուք էլ նույնը կանեիք... Իհարկե, եթե մանկությունից ձեզ սովորեցնեք կարգապահության և տոկունության։

Արմենը նայում էր իր ոտքերին և չգիտես ինչու զննում էր կոշիկների թելերը։

Հավաքույթը վերջացավ։ Արմենը տուն գնալու փոխարեն հետևեց ջոկատավարին։ Երբ մի փոքր հեռացել էին ասաց.

— Այդ ես էի այն օրը աքաղաղի նման կանչում։

— Գիտեմ,— հանգիստ ասաց Հրաչիկը,— ես գիտեի, բայց ուզում էի, որ դու ինքդ խոստովանես։ Հույս ունեմ, որ նման բաներ է՛լ չեն կրկնվի։

— Երբե՛ք,— ոգևորված բացագանչեց Արմենը,— ազնիվ պիոներական խոսք, երբե՛ք։

## ԻՄ ՔՈՒՅՐԻԿԸ

Իմ քույրիկը՝ Սուսանիկը
Սովորում է դպրոցում,
Եվ հաճախ է իմ մայրիկը,
Քույրիկիս հետ զրուցում։

Խրատներ է տալիս նրան,
Որ նա միշտ լավ սովորի,
Եվ Ստալին պապի նման,
Իր հայրենիքը սիրի։

Սիրում է նա կարդալ, գրել
Լավ գրեր է նա ուզում,
Հայրենիքին միշտ ծառայել,
Ահա, ինչ է երազում։

ՆՈՐԻԿ ՄՈՒՇԵՂՅԱՆ

(Երևանի Ռուսթավելու անվան դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ)

# Օղակը զեկուցում է

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հինգերորդ դասարանի պիոներական ջոկատի հավաքույթը լինելու էր մի քանի օր հետո, բայց բոլոր օղակներն արդեն սկսել էին պատրաստվել: Պիոներները հավաքույթի թեման գիտեին և վիճում էին, թե որ օղակի առաջադրանքն է ամենից հետաքրքիրը: Իսկ հավաքույթի թեման՝ «Մեր երկիրը հարուստ է շինանյութերով», իրոք որ հետաքրքիր էր:

Արամի օղակը որոշել էր այնպես պատրաստել իր նյութը՝ «Հայաստանի մարմարը», որ ոչ ոք նրան չգերազանցի: Ջոկատի խորհրդի նիստից հետո Արամը հավաքեց տղաներին ու ամեն մեկին տվեց իր ուզած աշխատանքը: Գևիկը պետք է պատմեր, թե արդյունաբերության ու շինարարության որ ճյուղերում է օգտագործվում մարմարը: Լևոնը պետք է պատմեր նոր հանքավայրերի մասին. Գարուշը համառոտ տեղեկություն պետք է տար մարմարի ու կրաքարի նմանության մասին, իսկ Զավենը՝ Երևանի մարմարի կոմբինատի մասին: Շատ գրավիչ էր նաև Միքայելի թեման: Նա կազմելու էր մարմարի տեսակների կոլեկցիա և պատմելու էր դրանց մասին: Զավենի ու Միքայելի օգնականներն էին՝ ինքը օղակավար Արամը, որը լավ նկարում էր և Վանիկը, որը սիրում էր փայտից գեղեցիկ տուփեր ու շրջանակներ պատրաստել: Ցոլիքսին էլ հանձնարարվեց հավաքույթի մասին հոդված գրել դրուժինայի պատի թերթի համար: Պիոներներից մեկն էլ առաջարկեց էքսկուրսիա կազմակերպել դեպի մարմարի գործարան:

Եվ օղակը գործի անցավ:

Վրա հասավ ջոկատի հավաքույթի օրը: Դասերից հետո պիոներական սենյակում մեծ աշխուժություն սկսվեց: Օղակները դասավորում էին նյութերը, կախում նկարները, վերանայում գրավոր ելույթները:

Եվ ահա բոլորը հավաքվեցին պիոներական սենյակում: Այդտեղ էին նաև դասարանի ղեկավար Աստղիկ Մուշեղյանը, բնագիտության դասատուն, դպրոցի դիրեկտորը և ավագ ջոկատավար ընկեր Կարլենը:

Առաջինը հանդես եկավ Միքայելը: Նա սեղանի վրայից վերցրեց ապակեպատ մի տուփ և բերեց կախեց ամբիոնի առջևից: Դա կոլեկցիան էր: Ապա նա ձեռքն առավ ցուցափայտը և սկսեց խոսել:

— Մեր երկիրը հարուստ է մարմարով,— ասաց նա.— այնքան հարուստ, որ երբ հարյուրավոր տարիներ էլ օգտագործենք չի վերջանա...

Միքայելը պատմեց, որ միայն Հայաստանում մոտ տասը տեսակ մարմար կա: Դրանից ամենալավը Աղամզալուի դեղին սաթի նման մարմարն է, հիանալի օնիքսը: Ուրիշ ոչ մի տեղ այսպիսի մարմար չկա: Դա Սովետական Միության առաջին հանքավայրն է: Կա նաև սպիտակավուն օնիքս: Դեղին օնիքսը հանում են գլխավորապես ճաճճուտից, որի շրջակայքում օձեր, մողեսներ և ուրիշ սողուններ շատ կան: Աղվերանում բաց և մուգ վարդագույն մարմարի մեծ պաշարներ կան: Նրանց տարբեր գույնի երակները առանձին գեղեցկություն են տալիս հանքատեսակին:

Միքայելը մեկ առ մեկ ցույց էր տալիս մարմարի տեսակները, որոնց նմուշների տակ Կարենը, փոքրիկ թղթիկների վրա, գեղեցիկ ձեռագրով գրել էր մարմարի տեսակի անունը, հանքավայրի տեղը և հայտնաբերելու տարեթիվը:

Սպիտակ ու մոխրագույն մարմար կա

Արզականի շրջակայքում: Դավալուն ու Խոռվիրապն էլ սև մարմարով են հարուստ: Սա գեղեցիկ մարմար է: Ունի ոսկեգույն և սպիտակ երակներ և շատ ամուր է: Ամենից պինդը Ջարխեչի մարմարն է: Ապարանում էլ կա սպիտակավուն մարմար, բայց խոշոր հատիկներից է կազմված և այժմյան մեքենաներով մշակել չի լինի, փշրվում է:

Միքայելը դրեց ցուցափայտը և նստեց. բայց կոլեկցիայում երկու նմուշ էլ կար, որոնց մասին նա չխոսեց: Պիոներները իրար նայեցին:

Այդ ժամանակ ամբիոնին մոտեցավ Լևոնը և պատմեց, թե ինչպես մեր երկրաբանները



Լևոնը ցույց տվեց կոլեկցիայի մնացած նմուշները, որոնք նոր հայտնաբերված մարմարի բեկորներ էին:

Գևիկն իր թեման լավ էր ուսումնասիրել: Նա ոչ միայն հետաքրքրվել էր, թե արդյունաբերության որ ճյուղերում են օգտագործում մարմարը, այլև ընկերոջ հետ գնացել էր Օպերային թատրոն, Կառավարական տուն, Պիոներների պալատ և տեսել, թե ինչ տեսակի մարմարներ էին օգտագործել այնտեղ:

Գևիկը կարդացել էր Մոսկվայի մետրոյի մասին, որի ստորերկրյա շքեղ կայարաններում էլ փայլում է Հայաստանի մարմարը: Կույբիշևյան կայարանի հոյակապ սյուներն ու պատերը երեսապատվել են Երևանի գործարանի արտադրած մարմարի տախտակներով:

— Հայաստանի գեղեցիկ ու բազմագույն մարմարը հայտնի է ամբողջ Սովետական Միության մեջ,— ասաց Գևիկը.— մարմար ուղարկվում է նաև Լենինգրադի մետրոյին, Մոսկվայի համալսարանի բազմահարկ շենքի շինարարությանը և շատ ուրիշ տեղեր: Մեր մարմարի խիճը հասնում է մինչև հեռավոր արևելք, հեռավոր հյուսիս, որտեղ



շարունակում են նոր հանքավայրեր հայտնաբերել: Վերջերս Վեդու շրջանում նոր հանք է գտել Երևանի մարմարի կոմբինատի դիրեկտոր, ավագ գեոլոգ Գ. Բաղդասարյանը: Այդտեղ մոխրագույն և մարմնագույն մարմարի բոլոր երանգները կան: Հանքավայրը ճանապարհին շատ մոտ է և քարը տեղափոխելը շատ հարմար:

նրանից խճանկարներ են պատրաստում: Գործարանի արտադրած մարմարի փոշին ուղարկվում է Արզնու ապակու գործարան: Առանց այդ փոշու, ապակին ցածր որակի կլինի: Մարմարի փոշի և խիճ ուղարկում ենք նաև Կոմունիզմի մեծ կառուցումներին:

Գևիկի պատմածից տղաներն իմացան, որ մարմարի տախտակները շատ անհրաժեշտ

են էլեկտրական արդյունաբերության, էլեկտրակայանների համար: Այստեղ բաշխիչ վահանները մարմարից են լինում և տուրբինների դահլիճի պատերն ու հատակը մարմարով են ծածկվում:

— Գործարանն ուրիշ առարկաներ էլ է արտադրում... Դրա մասին էլ Ջավենը կըպատմի:

Մարմարի գործարանում Ջավենն ու Արամն ամենից ուշադիր էին դիտել արտադրությունը և լրացուցիչ հարցեր պարզել: Եվ Ջավենն սկսեց պատմել Երևանի մարմարի գործարանի մասին:

— Գործարանը հիմնվել է 1928 թվականին: Այն ժամանակ դա մի փոքր արհեստանոց էր: Այժմ ուրիշ է...

Մարմարն այստեղ մշակում են այսպես: Տոննանոց քարերը հանքավայրերից ավտոներով ու գնացքով փոխադրում են գործարան: Անմիջապես հանքաքարերը ամրացնում են վագոնիկների վրա և տանում սղոցող մեքենաների տակ: Պողպատի բազմաթիվ երկար շերտերի մի շարք, որոնք ամրացված են քառանկյունի մեծ շրջանակին, ետ ու առաջ շարժվելով սղոցում են մարմարը: Սղոցներն ատամ չունեն, որովհետև մարմարն այնքան կարծր է, որ ոչ մի ատամ չի դիմանում: Մեքենայի վերևում ամրացված խողովակի ծակոտիներից անընդհատ ջուր է թափվում քարի վրա, իսկ սղոցող բանվորը երբեմն կվարցի ավազ է լցնում վրան: Ավազն ու ջուրը սղոցի հետ միասին մաշում են քարը: Եվ մարմարի անտաշ զանգվածը բարակ շերտերի է բաժանվում: Ապա կտրող դազգահի վրա շերտերը կտրտում են ուզած չափով ու ձևով: Այդ դազգահը կարբունդի փրեզեր է կոչվում: Այստեղ էլ են մարմարը մաշելով կտրում: Տարբեր ամրության մարմարի համար, գործարանում, զանազան մաշող նյութերից, տարբեր անիվներ են պատրաստում: Այդ անիվներով է, որ կըտրում են մարմարի անձև շերտերը: Այստեղ էլ ջուրը մեծ գործ է կատարում:

Այնուհետև հղկող ու հարթող դազգահներով մարմարի շերտերը դարձնում են ողորկ ու փայլուն սալիկներ:

Գործարանն ունի երեք ցեխ՝ սղոցարան, գրասենյակային պիտույքների և քար ջարդող:

Ջավենը ցույց տվեց թված մեքենաների նկարներն ու շարունակեց.

— Գրասենյակային պիտույքների ցեխում հատուկ գործիքներով պատրաստում են ծծաններ, թանաքամաններ սարքեր, կափարիչներ և այլ իրեր...

Երբ մտնում ես գործարանի բակը քար ջարդող սարքավորման մոտ քարերի կույտեր ես տեսնում. բայց դրանք հասարակ քարեր չեն, այլ մարմարի փոքր կտորներ, որոնցից սալիկներ պատրաստել հնարավոր չէ: Դրանք ջարդում մանրում են ու տարբեր մեծության խիճ դարձնում:

Վերջում մարմարի ծագման մասին համառոտ պատմեց Գարուշը:

Կրաքարն ու մարմարը նույն քիմիական կազմություննն ունեն, բայց մարմարը բյուրեղացած կրաքար է: Կրաքարն առաջանում է դարերի ընթացքում ծովերում, լճերում ու նաբիններում եղած նստվածքներից և հետո բարձր ջերմության ու ճնշման տակ վերածվում մարմարի: Մարմարի լեռները ցույց են տալիս, որ այդ վայրերը շատ վաղուց եղել են ծովի հատակում:

Բնագիտության դասատուի տված գիտելիքներին այդ օրը շատ բան ավելացավ: Տղաներն իմացան, որ 1952 թվականին Երևանում սկսելու են կառուցել մարմարի մի մեծ գործարան, որի շինարարության համար մեր կառավարությունը 20 միլիոն ռուբլի է հատկացրել: Իմացան, որ այդ գործարանում նոր և հզոր մեքենաներ են լինելու: Ավելի շատ ու գեղեցիկ իրեր կարտադրի գործարանը...

Ջոկատի հավաքույթը վերջացավ: Պիոներները գոհ և ուրախ գնացին տները: Նրանք շատ բան էին սովորել այդ օրը:

## ՄԵՐ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Գալիք տարվա
Նախօրյակին
Ցանկություն են
Հայտնում մարդիկ,
Թե ինչ բերի
Նորեկ տարին
Իրենց երկրին
Ու աշխարհին:

Եկեք, մենք էլ
Երեխանե՛ր,
Ցանկանանք, որ
Նորեկ տարին
Բերի կայուն
Խաղաղություն
Թե՛ մեր երկրին,
Թե՛ աշխարհին,
Որ ամեն օր
Ժամանակին
Հնչի զանգը
Մեր դպրոցի,
Որ բանվորը
Եվ գյուղացին
Հանգիստ գնան
Իրենց գործին,
Որ չլինի
Արյուն ու լաց,
Մեր երկիրը
Մնա ծաղկած...

Ազնիվ մարդիկ
Ողջ աշխարհում
Խաղաղություն են
Ցանկանում,
Ու չեն թողնի,
Որ թշնամին
Վերջ տա մեր այս
Խաղաղ կյանքին:

## ՁՄԵՌ ՊԱՊԻՆ ՈՒ ՆՈՐ ՏԱՐԻՆ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ձմեռ պապին,
Քուրքը հագին,
Ուրախ-ուրախ,
Ձյունաթաթախ,
Առած գրքեր,
Խաղալիքներ,
Խնձոր-չամիչ,
Մտավ դահլիճ:
— Շնորհավո՜ր
Ձեր նոր տարին,
Ժիր մանուկնե՛ր
Իմ թանկագին:

Ինձ մոտ եկեք.—
Ասաց նա մեզ,—
Որ նվերներ
Բաժանեմ ձեզ:
Նվերներով
Տեսակ-տեսակ,
Պապին նստեց
Եղևնու տակ:
Ուրախացանք,
Թռչկոտեցինք,
Պապիկի մոտ
Վազ տվեցինք:

— Պատկերազարդ
Գիրքն այս սիրուն
Նվիրում եմ
Արմենուհուն:
Այս ավտոն էլ,—
Ասաց պապին,—
Նվիրում եմ
Կարապետին:
Իսկ քեզ Սահակ՝
Մի սավառնակ.
Քեզ Աշոտիկ՝
Սիրուն ծիտիկ:

Արտաշեսին՝
Այս փայտե ձին.
Նավակն ո՞ւմ տամ՝
Առ քեզ, Արա՛մ:

Այս նվերն էլ,
Մանուկներ ջան,
Աղավնին է
Խաղաղության...
Ճերմակ-ճերմակ
Ժիր աղավնին,
Թռավ նստեց
Տնածառին...

# ՆՐԱՆ ՉԵՆ ՄՈՌԱՆԱ

ԲԼԱԳԱ ԴԻՄԻՏՐՈՎԱ

Նկ. Հ. ՔԱՑԱԿՅԱՆԻ

Լիլյանա Դիմիտրովան մեծացավ աղքատ ընտանիքում։ Նրա պապը՝ Դիմիտրը, ապըստամբ-հայդուկ էր և պայքարում էր յանիչարների դեմ, թյուրքական լծի դեմ, բուլղարական ժողովրդի համար։ Փոքրիկ Լիլյանան սիրում էր երկար նայել պապի նկարին, որի հերոսությունների մասին մայրը նրան հաճախ էր պատմում։ Պապը պատկերված էր հայդուկի հագուստում, մի մեծ ատրճանակ գոտուց կախ, ու սև երկար բեղերով։ Երբ Լիլյանան մեծացավ, նա ձգտում էր լինել ճիշտ այնպիսին, ինչպիսին պապն էր, և իսկապես դարձավ համարձակ։ Նա էլ սկսեց պայքարել ազատության համար, բայց արդեն ոչ թե թյուրքերի, այլ բուլղարական և գերմանական ֆաշիստների դեմ։

Մի անգամ ֆաշիստները փնտրում էին նրան և ուզում էին բանտարկել։ Աղջիկն այդ ժամանակ թաքնվում էր Սոֆիայի շրջակայքի մի աղքատիկ խրճիթում։ Ոստիկանությունը շրջապատեց խրճիթը և Լիլյանային սպառնաց մահով, եթե նա չհանձնվի. բայց աղջիկը չվախեցավ և համարձակ սկսեց կրակել։ Նրա կրակը անվրեպ էր և ֆաշիստները նահանջեցին, վախենալով այդ քաջ աղջկանից։ Իսկ երբ փամփուշտները վերջացան, նա աննկատ կերպով դուրս եկավ խրճիթից և թաքնվեց մի ուրիշ աղքատ հյուղակում։ Այնտեղ խավար էր ու ցուրտ։ Հողե մերկ հատակին նստել էր նիհար մի տղա։ Նա Լիլյանային էր նայում արտասված աչքերով և աղջիկը նստեց նրա մոտ, գրկեց տղայի ուսերը, ցանկանալով հանգստացնել նրան։

— Ի՞նչպես է քո անունը, փոքրի՛կ,— հարցրեց Լիլյանան։

— Անգելչո,—պատասխանեց տղան դեռևս վախվխելով։

— Իսկ ինչո՞ւ ես դու մենակ, Անգե՛լչո։ Ո՞ւր է քո մայրը։

Մի փոքր հանգստանալուց հետո տղան պատմեց, որ նա հայր չունի՝ սպանված է, իսկ մայրը աշխատում է ֆաբրիկայում։ Նա, Անգելչոն, ամբողջ օրը նստած է տանը և բակ չի գնում երեխաների հետ խաղալու, նրա ոտքերը հիվանդ են։

Լիլյանան զննեց փոքրիկի բոբիկ ոտքերը։ Նրանք իսկապես ձողի նման բարակ էին և աղջիկը հասկացավ. երեխան հիվանդ է ոսկրախտով։ Դա աղքատ երեխաների հիվանդություն է, որոնք համարյա արև չեն տեսնում։



Նա շուրջը նայեց։ Սենյակը կիսանկուղային էր, մութ ու խոնավ։ Այստեղ հիրավի երբեք արև չէր մտնում։ Լիլյանան նայելով տղային ընկավ ծանր մտատանջության մեջ։

— Իսկ գիտե՞ս, Անգե՛լչո,— վերջապես ասաց նա,— դու դեռ կլավանաս։ Դու դեռ կխաղաս մյուս երեխաների հետ... Դու նրանցից ավելի արագ կվազես։

— Իսկ այդ ե՞րբ կլինի,— հարցրեց Անգելչոն և նրա աչքերը փայլեցին սենյակի կիսախավարում։

— Սպասի՛ր, մենք քեզ շուտով ծովի ափ կուղարկենք։ Դու այնտեղ իսկույն կլավանաս՝ արևը քեզ կբուժի։

— Իսկ ի՞նչ բան է «ծովը»,— զարմացած հարցրեց տղան։

Լիլյանան հասկացավ, որ նա ոչ միայն ծով չի տեսել, այլև չի լսել նրա մասին։

— Ծովը, Անգե՛լչո, շատ գեղեցիկ է։ Ա՛յ,

պատկերացրու՝ մենք նստած ենք ափին, իսկ մեր առաջ, որ կողմ էլ նայես — ջուր է ու ջուր… Կապույտ, լայն, լուսավոր։ Նա փայլում է, գունափոխվում, և նույնիսկ մարդու աչքը ցավում է նայելուց, այնքան լույս կա չորս կողմը։

— Իսկ ե՞րբ ենք մենք այնտեղ գնալու։ Խնդրում եմ, ուղարկել ինձ շուտով։

— Մենք, Անգե՛լլո, այնտեղ կգնանք, երբ գա ազատության օրը։

— Իսկ այդ ե՞րբ է լինելու,— նորից հարցրեց նա։

Լիլյանան նրան ամուր սեղմեց կրծքին։

— Շուտով, Անգե՛լլո, շուտով։

Անգելլոն նորից մի բան էր ուզում հայտնել աղջկան, բայց հանկարծ ինչ-որ մեկը այնպես ցասումնալից ծեծեց դուռը, որ ամբողջ խրճիթը դողաց։

— Բաց արա,— բղավեց մեկը դրսից։

Լիլյանան վեր թռավ տեղից, համբուրեց Անգելլոյին, և մինչև նա ուշքի կգար, պատուհանից դուրս թռավ։ Մի վայրկյան հետո սենյակ խուժեցին ոստիկանները։ Նրանք սենյակը լուսավորեցին աչք ծակող էլեկտրական լապտերով։ Ոստիկաններից մեկը ուժեղ քաշեց Անգելլոյի վերարկուից և գոռաց ուղղակի նրա երեսին։

— Նա ո՞ւր գնաց… Շո՛ւտ ասա, թե չէ քեզ կծեծենք։

Բայց Անգելլոն լռում էր, վախից թարթում աչքերը։ Նա հասկանում էր, որ այդ մարդիկ եթե բռնեն, կսպանեն անծանոթ աղջկան և որոշեց լռել։ Ոստիկանն սկսեց մտրակով հարվածել նրան։ Անգելլոյին այդ սոսկալի ցավ էր պատճառում և նա չդիմանալով՝ բարձրաձայն լաց եղավ, բայց այդպես էլ նա ոչինչ չասաց։ Այդ ժամանակ ավազակներից մեկը նրան քացով խփեց և չարությամբ ասաց մյուսներին.

— Թող կորչի լակոտը… տեսնո՞ւմ եք, խուլ ու համր է։ Ի՞նչ կարելի է դրանից սպասել։

Նրանք դուռը աղմուկով փակեցին իրենց ետևից և գնացին։ Անգելլոն երկար ժամանակ լաց էր լինում և կծկվում ցավից… Երբ մայրը աշխատանքից վերադարձավ, նա պատմեց իր հետ պատահածը։ Մայրը արցունքոտ աչքերով գրկեց որդուն։

— Մանկի՛կս, դու չգիտես, թե ով է եկել քեզ մոտ։ Այդ աղջիկը կռվում է ֆաշիստների դեմ։ Ամբողջ քաղաքը գիտի, թե նա ինչպես է խուսափում ոստիկանների ձեռքից։

Այդ օրվանից Անգելլոն միշտ սպասում էր, որ անծանոթ աղջիկը նորից իրենց հյուր կգա։ Թող նորից ֆաշիստները իրեն ծեծեն, միայն թե մի անգամ էլ տեսնի նրան, լսի նրա պատմածը, այն հրաշալի պատմությունը՝ ծովի, արևի և ազատության մասին։

Բայց օրերն անցնում էին, իսկ Լիլյանան այդպես էլ չէր հայտնվում։

…Եվ ահա ազատության օրը եկավ։ Բոլոր մարդիկ փողոց վազեցին։ Միայն Անգելլոն մնաց տանը, ոտքերը դեռ չէին հնազանդվում նրան։

Հանկարծ սենյակ վազեց մայրը։ Նա ծանր էր շնչում, աչքերը փայլում էին ուրախությունից։ Տղային ձեռքերի վրա առնելով, նա նրան դուրս տարավ և փողոցում Անգելլոն տեսավ մի հրաշալի պատկեր։ Իրենց աղքա-



տիկ փողոցն այժմ ժպտում էր արևից ու ծաղիկներից, մարդիկ տանում էին կարմիր դրոշներ և երգում էին։ Մի սովետական զինվոր ուսին ծաղիկներով զարդարված հրացան, ելավ մի բարձր արկղի վրա և սկսեց խոսել։ Բոլորը լռեցին։ Անգելլոն համատարած լռության մեջ լսեց նրա խոսքերը.

— Ընկերնե՛ր, ազատության օրը վրա հասավ։

Ազատության օր։ Անգելլոն ուրախ ճիչով ամուր սեղմվեց մորը։ Ուրեմն ահա թե ինչի

*մասին էր այն ժամանակ խոսում անծանոթ աղջիկը։*

* * *

*Անգելչոն պառկել էր ծովափին, արևից ջերմացած ավազի վրա։ Նրա առաջ տարածվել էր անծայրածիր, կապույտ ծովը, որը մի ժամանակ նրան նկարագրել էր անծանոթ աղջիկը։ Տղայի դեմքը արևառ էր, աչքերը ուրախ շողում էին և նա ինքնամոռաց խաղում էր ընկերների հետ։*



*Նա այնպես ուրախ էր, ինչպես երբեք. բայց նա ոչ մի րոպե չէր մոռանում այն աղջկան, որն ինչ-որ մի անգամ եղել էր իրենց խրճիթում։ Ինչպե՜ս կուզեր նրա հետ նստել ծովափին։ Բայց այդպես էլ նա այլևս չտեսավ նրա մեծ ու կապույտ աչքերը, չլսեց նրա շոյող ձայնը։*

*Երբ մայրը եկավ Անգելչոյին տուն տանելու, չճանաչեց իր տղային. նա լցվել էր, կազդուրվել, արևից սևացել, կարողանում էր նույնիսկ քայլել։ Մայրը լաց եղավ ուրախությունից։*

*— Մայրի՛կ, ասա, ո՞ւր է այն աղջիկը, որը եկավ մեզ մոտ, երբ դեռ ֆաշիստներ կային,— հարցրեց Անգելչոն։*

*Մայրը ծանր ու դառնորեն հառաչեց.*

*— Այդ աղջիկը Լիլյանա Դիմիտրովան էր, տղա՛ս, նրան ճանաչում է մեր ամբողջ ժողովուրդը։ Նա հերոսուհի էր և պայքարել է այն բանի համար, որպեսզի ազատություն լինի, բայց ինքը չտեսավ այդ օրը։ Թանկագին աղավնյա՛կս, նրան ֆաշիստները սպանեցին...*

*Մայրը լռեց և նրա աչքերը լցվեցին արցունքով. նա ճանաչում էր Լիլյանային. իսկ նա, ով թեկուզ մի անգամ տեսել է այդ քաջ աղջկան, այլևս չէր կարող մոռանալ։ Նրան սիրում և հիշում էին բոլորը։*

*...Փոքրիկ Անգելչոն մեծանում է։ Նա արդեն դպրոց է գնում։ Արևն ու ծովը բուժել են նրան, բայց նա երբեք չի մոռանում Լիլյանային, որի պատկերը կախված է նրա նոր, լուսավոր սենյակում։ Նա գիտե, որ աղջիկը զոհվել է բանվորների երեխաների համար, այն բանի համար, որ նրանք լինեն առողջ, ուրախ ու երջանիկ։*

# ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՕՐԵՐ

Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

*1919 թվականին Սովետական Հայրենիքը համառ մարտեր էր մղում սպիտակգվարդիական բանդաների, ամերիկյան, անգլիական և այլ կապիտալիստական երկրների դեմ։ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի ղեկավարությամբ մեր ժողովուրդը թշնամիների դեմ մղվող կռիվներում պաշտպանում և ամրապնդում էր մեծ հոկտեմբերի նվաճումները։ Ահա այդ օրերին մայիսմեկյան շքերթի ժամանակ Վ. Ի. Լենինը երեխաների մասին ասել է.*

*«Մինչև հիմա, ինչպես հեքիաթում, խո-*

սում էին այն մասին, թե ինչ կտեսնեն մեր երեխաները. բայց այժմ, ընկերնե՛ր, դուք պարզ տեսնում եք, որ մեր կողմից հիմնադրված սոցիալիստական հասարակակարգի շենքը ուտոպիա չէ։ Ավելի ջանասիրաբար կկառուցեն մեր երեխաներն այդ շենքը»։

Այժմ մենք ականատես ենք այս իմաստուն խոսքերի կենսագործմանը։ Մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը կոմունիզմ է կառուցում։

1919 թվականի մայիսի 25-ին, Մոսկվայի երիտասարդությունը կուռ շարքերով դուրս էր եկել Կարմիր հրապարակ նշելու ընդհանուր ռազմական ուսուցման օրը, ցույց տալու իր ուժն ու նվիրվածությունը հայրենիքին, Լենինի—Ստալինի մեծ գործին։ Հրապարակ էր դուրս եկել նաև երեխաների մի խումբ, որն իրեն կոչում էր՝ «Պատանի կոմունիստների ջոկատ»։

Այդ անմոռանալի օրը Վ. Ի. Լենինը, հանդես գալով երեխաների առաջ, ասել է. «Երեխաները ևս, աճող պրոլետարները, պետք է օգնեն ռևոլյուցիային»։

Ապա Վլադիմիր Իլյիչը արտահայտել է այն միտքը, թե կոմունարներ դաստիարակելու լավագույն ուղին, դա երեխաների կազմակերպության ստեղծումն է։ Այդ երջանիկ հանդիպման մասնակիցներից մեկը պատ-



մում է, թե ինչպես Իլյիչը գնացել է երեխաների մոտ և ողջունել նրանց։

Երբ հաղթականորեն ավարտվեց քաղաքացիական պատերազմը, պարտիայի հանձնարարությամբ և Լենինի ցուցումով կոմերիտմիությունը ձեռնամուխ եղավ պիոներական կազմակերպության ստեղծմանը։

1922 թվականին Մոսկվայի Կրասնոպրեսնենսկի ռայոնի 16-րդ տպարանի կոմերի-



տականները կազմակերպեցին առաջին պիոներական ջոկատը, որն ընդգրկում էր 52 հոգի։

1924 թվականին մեր ժողովուրդը մեծագույն վիշտ կրեց. հունվարի 21-ին վախճանվեց բոլշևիկյան պարտիայի և սովետական պետության ստեղծողն ու մեծ առաջնորդը՝ Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Իլյիչի դագաղի մոտ պատվո պահակ էին կանգնել նաև պիոներները։

Համաժողովրդական վշտի օրերին, հունվարի 23-ին հրավիրված կոմերիտմիության Կենտրոնական Կոմիտեի պլենումը, բոլշևիկների պարտիային և ընկեր Ստալինին կոմերիտական խոստում տվեց՝ պիոներական կազմակերպության շարքերում աճեցնել լենինյանների արժանավոր սերունդ։ Ի նշան Վ. Ի. Լենինի պատգամներին հավատարիմ սերունդ դաստիարակելու այդ պատրաստակամության, պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հանձնարարությամբ, կոմերիտ-

*միության Կենտկոմը որոշեց պիոներական կազմակերպությունը կոչել Վ. Ի. Լենինի անունով: Այդ առթիվ պիոներներին և բոլոր երեխաներին ուղղած իր դիմումի մեջ, Կենտկոմի պլենումը գրել է.*

*«Դուք պետք է արժանի լինեք այն մեծ անվանը, որ գրված է ձեր դրոշի վրա»:*

*Պատանի պիոներները ցնծությամբ ընդունեցին իրենց կազմակերպության մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի անունը շնորհելու լուրը: Որպես պատասխան Կենտրոնական Կոմիտեի որոշման և դիմումի, հազարավոր երեխաներ անցան Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության շարքերը:*

*1924 թվականի մայիսի 23-ին, 10 հազար պիոներ Մոսկվայի Կարմիր հրապարակում հանդիսավոր երդում տվին մեր պարտիային, ընկեր Ստալինին, Իլյիչի պատգամները կատարելու և Լենինի—Ստալինի մեծ գործին հավատարմորեն ծառայելու մասին: Պարտիայի և սովետական ժողովրդի իմաստուն առաջնորդ և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը և պարտիայի 13-րդ համագումարի դելեգատները մասնակցեցին այդ պատմական երդմանը:*

*Պատանի լենինյանների բանակը, որն այժմ իր շարքերում համախմբում է 19 միլիոն երեխա, պարտիայի և կոմերիտմիության անմիջական ղեկավարությամբ պատվով է կատարում անմահ Իլյիչի պատգամները: Միլիոնավոր հայրենասեր երեխաներ, պիոներական կազմակերպության շարքերում դաստիարակվում և աճում են, որպես լենինյան-ստալինյան կոմերիտմիության արժանավոր փոխարինողներ:*

*Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպությունը առաջնորդվում է ընկեր Ստալինի հետևյալ իմաստուն խոսքերով.*

*«Հիշեցեք, սիրեցեք, ուսումնասիրեցեք Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին: Իլյիչի պես պայքարեցեք և հաղթեցեք ներքին ու արտաքին թշնամիներին:*

*Իլյիչի պես կառուցեք նոր կյանք, նոր կենցաղ, նոր կուլտուրա: Երբեք մի հրաժարվեք աշխատանքի մեջ փոքրից, որովհետև փոքրից է կառուցվում մեծը, այս է Իլյիչի կարևոր պատգամներից մեկը»:*

*Պիոներները կոմերիտմիության ղեկավարությամբ կսովորեն լավ, կտիրապետեն գիտելիքների հիմունքներին, կաճեն որպես ազնիվ, խիզախ ու համարձակ հայրենասերներ և կպայքարեն Լենինի—Ստալինի գործի՝ կոմունիզմի կառուցման համար:*

# Ձայնը չենթարկվեց կարգադրության

*Ա. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*
(Պատանի տեխնիկների կենտրոնական կայանի վարիչ)

*Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

1.

Դպրոցի ռադիո-հանգույցը պատրաստ էր: Վերջապես այսօր պետք է կատարվեր Պատանի տեխնիկների կենտրոնական կայանի ռադիոխմբակի անդամ Կառլոս Բաղալյանի, Ռուբիկ Իսրայելյանի և նրանց ընկերների բուռն ցանկությունը: Ամբողջ դպրոցում՝ դահլիճում, միջանցքներում և նույնիսկ բակում պետք է հնչեր առաջին ողջույնը սեփական ռադիո-հանգույցից:

Դրուժինայի հավաքույթի հենց սկզբին անսպասելի կերպով պետք է հնչեր ռադիո-հանգույցի ձայնը. բայց բարձրախոսը լուռ էր:

Կառլոսն էլ չհամբերեց ու վազեց չորրորդ հարկ, լայն բացեց հանգույցի սենյակի դուռը և ներս ընկավ:

— Հը՞,— բացագանչեց նա:

Ընկերները տարակուսած նայեցին նրա կողմը:

— Ինչ ո՞ր... չի ստացվել...— կմկմաց Ռուբիկը:

— Գուցե սխալը գծագրո՞ւմ է,— ասաց Սվինգալը:



Թումանյանի անվան դպրոցի 8-րդ դասարանի աշակերտներ՝ Ռուբիկ Մելիք-Իսրայելյանը և Վանիկ Ղազարյանը ստուգում են իրենց պատրաստած դպրոցական ռադիո-հանգույցը:

Սկսվեց լարված աշխատանքը: Այդ օրը ստուգման ենթարկվեց ամբողջ ռադիո-հանգույցը: Ամեն ինչ տեղին է՝ գծագրի համաձայն: Երեկոյան ստուգեցին գծագիրը: Գծագրում սխալներ չկային: Մյուս օրը՝ նորից ստուգումներ. ոչ մի բերություն չկար: Ստուգումները կրկնվեցին մի քանի անգամ: Եվ ահա սխալը գտնվեց: Ռուբիկը կոնտուրի երկարալիքային կոճի վրա կեղծ միացում ունեցող լար էր փաթաթել: Արտաքինից այդ լարն իսկականից ոչընչով չէր տարբերվում:

Պատանի ռադիստները բերությունն անմիջապես վերացրին և հանգույցն սկըսեց աշխատել. բայց նրանք չհանգստացան: Մի քանի օր հետո դիրեկտորին զեկուցեցին, որ արձանագրված 2—3 կայաններից բացի հանգույցը մի շարք այլ կայաններ էլ է բռնում:

Այսպես հաղթեցին պիոներները: Նրանք հաղթահարեցին շատ դժվարություններ, որովհետև լավ էին սովորում դպրոցում և պատանի տեխնիկների կայանի ակտիվ մասնակիցներն էին:

Երևանի Չկալովի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ է Կառլոս Բաղալյանը: Կայանի ռադիոխմբակում նա սկսեց դետեկտորային պարզ ընդունիչներ պատրաստել: Հետագայում նրա պատրաստած լամպային ընդունիչները զովասանքի արժանացան: Անցան ամիսներ: Մի օր էլ Կառլոսն ու իր ընկերները դպրոցում ռադիո-հանգույց պատրաստեցին...

Պատանի տեխնիկների կայանում ուրիշ խմբակներ էլ կան: Բազմաթիվ պիոներներ հաճույքով են հաճախում էներգետիկ, ավիոմոդելային, քիմիական և ֆոտո սիրողների խմբակները:

Երբ 47-րդ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ Մարտին Արշակյանն ընդունվեց կայանի էներգետիկ խմբակը, ամենահասարակ սարքերի հետ վարվել չգիտեր, իսկ հիմա նոր ընդունվածներին ինքն է սովորեցնում: Մարտինն սկզբում պարզ տիպի էլեկտրամոտոր պատրաստեց, իսկ վերջերս Գեղամ Պետրոսյանի հետ վերանորոգեց կայանի կինոապարատը: Նա այնքան է հարստացրել իր



Էներգետիկ խմբակը պարապմունքի ժամին. Ակ. Իսահակյանի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհիներ՝ Մաքրուհի Նազարյանը, Պոլյա Իոսիպովան, Անիցա Հովհաննիսյանը և ուրիշները ստուգում են հոսանքի ուղղությունը:

գիտելիքները, որ ռեակտիվ շարժիչներ էլ է պատրաստում:

Էներգետիկ խմբակի ակտիվ անդամներ են նաև Ալ. Իսահակյանի անվան դպրոցի աշակերտները: Լ. Դարբինյանը, Վ. Մոկացյանը և Հ. Սահակյանը խմբակում պատրաստած սարքերով հարստացրել են դպրոցի ֆիզիկայի կաբինետը: Գործնական աշխատանքները կայանում, օգնեցին նրանց: Նրանք սկսեցին ավելի լավ սովորել և տարեվերջի քննությունների ժամանակ չորս ու հինգ գնահատականներ ստացան:



26-ի անվան դպրոցի 8-րդ դասարանի աշակերտներ՝ Թելման Գասպարյանը, Ալիկ Առաքելյանը և 5-րդ դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ Գառնիկ Խարազյանը Հենրիկ Սանբրոսյանի ղեկավարությամբ պատրաստում են ավիոմոդելներ:

## 2.

1951 թվականի օգոստոս ամսի արևոտ մի օր Ստեփանավանում տեղի ունեցավ պատանի ավիոմոդելիստների հավաք: Նրանց մեջ էր նաև Մինաս Ֆահրադյանը:

Երբ սկսվեցին մրցությունները, Մինասի հիդրոինքնաթիռի մոդելը թռավ ամենից բարձր և ամենից ուշ վայրէջք կատարեց: Մինասն իրավունք ստացավ մասնակցելու համամիութենական մրցումներին:

Մինասը հինգերորդ դասարանում էր, երբ ընդունվեց ավիոմոդելիստների խմբակում: Մի երկու ամիս չանցած նա պատրաստեց բարդ մոդելներ: 1949 թվականին ռեսպուբլիկական մրցումների ժամանակ նա ռեսպուբլիկայի բացարձակ չեմպիոնի կոչում ստացավ: Նրա մոդելը բարձրացավ 1700 մետր և անցավ 10 կիլոմետր տարածություն: Հետևյալ տարին նա պատրաստեց արդեն ֆյուզելաժային մոդել մեխանիկական շարժիչով և նոր ռեսպուբլիկական ռեկորդ սահմանեց: Մոդելն օդում մնաց մի ժամ հինգ րոպե...

Ավիոմոդելիստների խմբակում էր սովորում նաև Արամ Ստեփանյանը: 1946 թվականից սկսած նա մի քանի ռեկորդ է սահմանել. իսկ այժմ ինքն է ղեկավարում այդ խմբակը:



Քիմիայի խմբակի մի խումբ անդամներ թթվածին և ջրածին ստանալու փորձեր են կատարում:

Այսպես համբերատար ու համառ կերպով են սովորում պիոներները նաև կայանի մյուս խմբակներում: Մինչև հիմա հազարավոր պատանիներ են կատարելագործվել

այնտեղ: Պատանի տեխնիկների կայանը հըպարտությամբ է հիշում իր նախկին սաներին, որոնք հերոսներ են դարձել: Օդանավի հետ այստեղ առաջին անգամ ծանոթացել են Սովետական Միության հերոսներ՝ Նելսոն Ստեփանյանը, Սերգեյ Բուռնազյանը: Նրանք կայանի առաջին ավիոմոդելիստներն են եղել: Երիտասարդ դոկտոր Սերգեյ Մերգելյանն ասում է, որ ինքը մաթեմատիկայի ասպարեզն ընտրել է Պատանի տեխնիկների կայանի հայտարարած կոնկուրսներում հաջողություն ունենալու շնորհիվ:

Դժվար է թվել բոլորին, որոնք պատանի տեխնիկների կենտրոնական կայանի շնորհիվ այժմ անվանի մարդիկ են դարձել:

Պատանի տեխնիկների կայանն անցյալ տարի ֆիզիկայի ինքնաշենների ու լավագույն սարքերի ռեսպուբլիկական ցուցահանդես կազմակերպեց: Այդտեղ մասնակցեցին Երևանի, Լենինականի և ռեսպուբլիկայի շըրջանների պիոներներն ու դպրոցականները: Եվ 98 պիոներ արժեքավոր նվերներ ստացան: Դրանցից շատերը մասնակցեցին Համամիութենական ցուցահանդեսին, որի ժյուրին պարգևատրեց Երևանի Ձերժինսկու և Կիրովի անվան դպրոցների պատանի տեխնիկներին լավագույն մոդելների համար:

Կայանը հետաքրքիր զեկուցումներ ու զըրույցներ է կազմակերպում սովետական տեխնիկայի նվաճումների մասին: Պատանի տեխնիկների էքսկուրսիաները դեպի գործարանները, նույնպես բազմապատկում են նրանց գիտելիքները և հարստացնում փորձը:

Ամեն օր պատանի տեխնիկների կայան են գալիս նորանոր պիոներներ ու դպրոցականներ: Նրանք լցված են տեխնիկան խորը կերպով ուսումնասիրելու ձգտումով և գիտեն, որ միայն գրքեր կարդալը կամ մեքենայի աշխատանքը դիտելը քիչ է: Անհրաժեշտ է նաև սեփական ձեռքերով գործող մոդելներ պատրաստել: Եվ նրանք համբերատար կերպով սովորում են ու աշխատում: Գործնական աշխատանքի ընթացքում նրանք գործադրում են ֆիզիկայի դասերի ու փորձերի ժամանակ ձեռք բերած գիտելիքները, մաթեմատիկական հաշվառումներ են կատարում, սովորում են գծագրել, վարժվում են հյուսնի, փականագործի գործիքներով աշխատելուն և տիրապետում էլեկտրամոտորի աշխատանքի ձևերին:

Այսպես է աշխատում և առաջադիմում Երևանի Պատանի տեխնիկների կենտրոնական կայանը:

## ՍՏԵՓԱՆԱՎԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՏԱՆԸ

— Նելլի՛, գրական խմբակի պարապմունքում դու ելույթելու ես Ն. Օստրովսկու «Ինչպես էր կոփվում պողպատը» վեպի մասին,—յոթերորդ դասարանի աշակերտուհի Նելլի Մկրտչյանին մոտենալով ասաց խմբակի ղեկավար Էմմա Բունիաթյանը:

Դա գրական խմբակի առաջին պարապմունքն էր լինելու:

Մի շաբաթ հետո բոլորն էլ կարդացել էին «Ինչպես էր կոփվում պողպատը» վեպը և պիոներների տանն էին հավաքվել քննարկելու այդ գիրքը:

Սկսվում է խմբակի պարապմունքը: Նելլի Մկրտչյանը համառոտ պատմում է Օստրովսկու կենսագրությունը, վեպի բովանդակությունը, ապա հերոսների կերպարների մասին:

— Ես երկրորդ անգամ է, որ կարդում եմ այս վեպը: Ես հիացած եմ Պավել Կորչագինի հերոսությամբ, վճռականությամբ, տոկունությամբ: Բայց Պավելն այստեղ մենակ չէ:

Նելլին պատմում է մյուս անմոռանալի հերոսների՝ Ժուխրայի, Արտեմի, Պավելի մոր մասին: Նրանք բոլորն էլ հերոս հայրենասերներ են և թշնամու դեմ մղվող պայքարում կյանքի գնով են պաշտպանում Սովետական Հայրենիքը:

Բոլոր ելույթ ունեցողները ջերմությամբ են խոսում սիրելի գրքի մասին:

— Այդ վեպը մեր սիրած գրքերից մեկն է. նրանով դեռ շատ պատանիներ և աղջիկներ կդաստիարակվեն.— այսպես է վերջացնում իր խոսքը Ռախսա Մկրտչյանը: Նրա առաջարկով որոշվում է հաջորդ անգամ քննության դնել Ելենա Կոշևայայի «Պատմվածք որդու մասին» գիրքը:

Գրական խմբակի պարապմունքներում պիոներները շատ բան են սովորում:

Ստեփանավանի պիոներների տանն ուրիշ ինքնագործ խմբակներ էլ կան, որոնք կազմակերպվեցին ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի որոշումներից հետո: Սկսեց գործել թատերական խմբակը: Մոտ ժամանակներս նրանք ունեցան առաջին ներկայացումը: Դահլիճը լեփ-լեցուն էր: Եկել էին հարյուրավոր պիոներներ ու դպրոցականներ: Նրանք դիտեցին



Ստեփանավանի պիոներական տանը, պատանի շախմատիստները մրցման ժամին:

Պանտելեևի «Ազնիվ խոսք» պիեսը: Դրամատիկ խմբակի առաջին բեմադրությունը շատ դուր եկավ պատանի հանդիսատեսներին և շատ էլ ոգևորեց փոքրիկ «արտիստներին»: Նրանք հետագա բեմադրությունների նոր ծրագիր կազմեցին:

— Ես կղեկավարեմ ձեր խմբակի փորձերը,— խոստացավ շրջանային թատրոնի ռեժիսոր Մարիա Սաղաթելյանը: Նա այժմ մեծ սիրով է դիտում պիոներների խաղը, դիտողություններ և ուղղումներ կատարում, օգնում է, որ ներկայացումը հաջող ստացվի:

Նոր կազմակերպված երգեցիկ խումբն էլ թատերականից ետ չի մնում:

Ամեն օր բազմաթիվ պատանիներ և աղջիկներ են գալիս պիոներների տուն և մասնակցում խմբակների պարապմունքներին:

ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումը նոր աշխուժություն ու հետաքրքրություն մտցրեց Ստեփանավանի պիոներների աշխատանքների մեջ: Այժմ նրանց առօրյան ավելի բովանդակալից է անցնում:

Գ. ԲԱԴԱԼՅԱՆ

# ՍԱՌՑԱԴԱՇՏԸ ՊԱՏՐԱՍՏ Է

*Ձմռան մի կիրակի օր էր. առավոտ: Քանաքեռի մանկական քաղաքում ուրախ աղմուկ էր տիրում: Պիոներները ցած էին սահում դպրոցի մոտի ձյունակույտերի վրայից:*

*— Այ թե չմուշկներ լինեին, բոլորովին ուրիշ բան կլիներ, կարելի էր ուզածի չափ սահել,— խոսեց Միհրանը:*

*— Տղանե՛ր, չմուշկներ ճարելը դժվար չէ,— ասաց Մերուժանը,— եթե խնդրենք՝ դիրեկցիան կօգնի մեզ:*

*— Սառցադաշտ կպատրաստենք.— հանկարծ վրա բերեց Վարդգեսը:*

*Ընկերները նայեցին նրա կողմը:*

*— Իհարկե, կարող ենք,— այդ խելացի առաջարկից հիացած պատասխանեց ջոկատավար Գևորգը:*

*Մի քանի օր հետո երրորդ ջոկատի պիոներները հավաքվեցին մանկատան լողարանի մոտ:*

*Սառցադաշտ պատրաստելու նրանց առաջարկն արդեն ամբողջ մանկական քաղաքում գիտեին: Դրուժինայի խորհուրդը բոլոր ջոկատներում մասսայականացրել էր երրորդ ջոկատի առաջարկությունը՝ սառցադաշտ պատրաստելու մասին և կոչ էր արել բոլորին՝ օգնել հինգերորդ դասարանցիներին:*

*Պիոներները ոգևորված աշխատանքի անցան:*

*Երրորդ ջոկատի պիոներների աշխատանքը շատ շուտով գրավեց նաև մյուս պիոներների ուշադրությունը: Նրանք միացան աշխատողներին: Աշխատանքի վայրը եկավ դրուժինայի խորհրդի նախագահ Մեջնուն Հունանյանը: Նրա երևալը մեծ ուրախություն պատճառեց բոլորին: Եվ ամեն մեկն աշխատում էր առաջինը վերցնել Մեջնունի բերած գործիքներից:*

*Քառասուն սան միացան աշխատողներին: Ջոկատներն աշխատում էին հերթով: Աշխատանքը հետզհետե նոր թափ էր առնում: Այսպես ամբողջ դրուժինան մասնակցեց սառցադաշտի պատրաստման աշխատանքներին:*

*Ժ. ՄԱՐԳԱՐՅԱՆ*




Ն. ԿԱԼՄԱ

Նկ. Վ. Թևանյանի

Աշնանային մի ցուրտ առավոտ, Արևմըտյան Գերմանիայի քաղաքներից մեկի փողոցով անցնում էր մի մարդ։ Նա հագին վերարկու չուներ։ Նրա քայլվածքից կարելի էր ենթադրել, որ նա ծեր է։ Բայց իրականում դա մի շատ երիտասարդ մարդ էր, որ նոր էր դուրս եկել բանտից, ուր անց էր կացրել երկու տարի։ Այնտեղ նրան սաստիկ խոշտանգումների էին ենթարկել։ Այդ մարդուն կոչում էին Պետեր Կրաուս։ Նա կոմունիստ էր։ Գիշերը ընկերները նրան օգնել էին փախչել բանտից։

Այժմ նրան հարկավոր էր ինչքան կարելի էր շուտ հեռանալ քաղաքից, ուր նրան կարող էր ճանաչել ու իշխանություններին հանձնել ամեն մի պատահական անցորդ։ Հապա ինչպես, երկու տարի առաջ Պետեր Կրաուսի՝ քաղաքական այդ վտանգավոր հանցագործի նկարը տպագրվել էր բոլոր թերթերում։ Կրաուսին որոնում էին։ Նրա տունը, նրա կինը՝ Մարթան, նրա փոքրիկ որդին՝ Կուրտը, բոլորը հսկողության տակ էին առնված։

Բանտում Պետերը բեղեր թողեց։ Այդ մի փոքր փոխեց նրա դեմքը, բայց և այնպես հարկավոր էր ամենամեծ զգուշություն պահպանել, որովհետև քաղաքում վխտում էին պարեկները...

Այն պլանով, որ կազմել էին ընկերները, Պետերը պետք է քաղաքից դուրս գար խճուղի և նստեր ճանապարհին պատահած մի որևէ ավտոմեքենա։ Կրաուսին չհաջողվեց փաստաթղթեր ձեռք բերել, և եթե պարեկը նրան բռներ, նրա գործը վատ կվերջանար... «Հարկավոր է շուտ հեռանալ», համոզում էր նա ինքն իրեն. այնինչ ոտքերը չէին ենթարկվում, իրենից անկախ շարժվում էին դեպի տուն։ Իհարկե, նա չէր կարող տուն մտնել, տեսնել Մարթային ու որդուն։ Այդ կլիներ իսկական կործանում. բայց գոնե հեռվից, թեկուզ մի աչքով նայի ծանոթ դռանը, այդու վրա թեքված պատշգամբին... «Միայն մի անգամ նայեմ», կրկնում էր ինքն իրեն Կրաուսը։

Նա թեքվեց դեպի անկյուն և տեսավ իր տունը։ Նրա սիրտը սկսեց այնպես բաբախել, որ շնչելը դժվարացավ։

Շունչը պահած Պետերը նայում էր իր տանը։ Աջից մանկական սենյակի պատուհանն էր։ Այնտեղ, պատահում էր, Կուրտը շարում էր իր փայտե զորքը և խորանարդիկներից պատրաստում կարմիր աշտարակ։ Անկյունի պատուհանը ննջարանինն է, ուր Մարթան միշտ ծաղիկներ էր դնում։ Բայց հիմա չկային ոչ ծաղիկները և ոչ էլ կարմիր աշտարակը։ Տունը թվում էր մեռած։

— Իսկ ո՞ւր են Մարթան ու տղաս։ Գուցե՞

նրանց էլ են բանտարկել,— տագնապով մըտածեց Կրաուսը։

Մոռանալով ամեն մի զգուշավորություն, նա մոտեցավ պարտեզի դռնակին։ Հայացքը տանից չպոկելով, նա սկսեց փողոցով իջնել ցած, դեպի խճուղի։ Այդ րոպեին դռան փականքը զրնգաց, դուռը բացվեց և պատըշգամբ դուրս եկավ մի տղա։ Նա բարձրահասակ էր և նիհար, առանց գլխարկի. հագին մի հին վերարկու ուներ, որն արդեն փոքրացել էր վրան։ Կրաուսն իսկույն ճանաչեց այդ վերարկուն, իր գնածն էր։ Պետերը ագահորեն նայում էր որդուն. ահա թե ինչքան է մեծացել նրա փոքրիկ Կուրտը։ Բոլորովին չափահաս է դարձել։ Դեմքն էլ բաց է, համատատակամ, համարձակ...

Կուրտը իջավ բակ և շվացրեց։ Լսվեց հաչոց և պատշգամբ դուրս թռավ խոշոր, մոխրագույն շերտերով, գայլի նման մի շուն։

— Վոլֆը,— ծանր հառաչեց Պետերը,— մեր ծեր, հավատարիմ Վոլֆը։

Եվ իսկապես. ինչպես նա կարող էր մոռացած լինել Վոլֆի մասին։ Չէ՞ որ Վոլֆը մի հասարակ շուն չէր, այլ համարյա տան մի անդամը։ Երբ դեռ Կուրտը փոքր էր, նա պահպանում էր նրա սայլակը, իսկ երբ Կուրտը դպրոց էր գնում, Վոլֆը նրան ամեն անգամ ճանապարհում էր, ատամների մեջ առած դասագրքերով լի պայուսակը։

Դուրս վազելով և օդը հոտոտելով, Վոլֆը հանկարծ մոլտաց, թռավ պատշգամբից և նետվեց դեպի պարտեզի դռնակը։

— Վո՛լֆ, ի՞նչ պատահեց քեզ, ետ դարձիր, Վո՛լֆ։

Բայց Վոլֆն ասես խլացել էր։ Նա դուրս թռավ փողոց և սկսեց վազել այն մարդու ետևից, որն արդեն քայլում էր հակառակ մայթով։

— Վո՛լֆ, այստեղ, ինձ մոտ արի, Վո՛լֆ,— վախից իրեն կորցրած կանչում էր Կուրտը։

Նա հողից դուրս քաշեց անցյալ տարվա գեորգենու թփի հենակն ու վազեց շան ետևից։ Նրան արդեն օգնության էին շտապում պարետության մի ոստիկան և ամերիկյան պահակախմբի երկու զինվոր։ Տղայի ճիչը և շան հաչոցը ոտքի հանեցին ողջ փողոցը։ Պատուհաններից դուրս էին նայում տագնապած բնակիչները։

Հուզմունքից շնչակտուր եղած Կուրտը հասավ շանը, երբ վերջինս արդեն հարձակվել էր անցորդի վրա։ Վոլֆը կատաղած թռչկոտում էր, ցանկանալով հասնել մարդու երեսին։

— Փայտով, փայտով խփիր շանը, ամո՛ւր,— գոռում էին ոստիկանն ու զինվորները։

Կուրտն օդում պտտեց փայտը, ուզեց խփել շանը ետ քշելու համար։ Եվ հանկարծ... հանկարծ փայտն ընկավ նրա ձեռքից և նա քարացած նայեց անցորդին։



— Ի՞նչ։ Այդ ի՞նչ է,— շշնջաց նա,— Վո՛լֆ, դո՞ւ...

Նա հանկարծ տեսավ, որ Վոլֆը կատաղել է ոչ թե չարությունից, ոչ թե թշնամու վրա հարձակվելու ցանկությունից, այլ հիացմունքից։ Նա չի ուզում կծել, այլ փորձում է լիզել անցորդի դեմքը։ Եվ ոռնում է ոչ թե գազազելուց, այլ ուրախությունից։ Երջանկությունից էլ նա այդպես հարձակվել է մարդու վրա, շան անզսպելի հավատարմությամբ։

Կուրտը դողաց։ Վոլֆը աշխարհում միայն մի մարդու էր այդպես դիմավորում։ Միայն մի մարդու հանդեպ էր ցուցաբերում այդքան սեր ու հավատարմություն։

Տղան ամբողջովին տեսողություն

դարձած նայում էր անծանոթին։ Ո՛չ, իհարկե, նա սխալվում է… Գունատ, օտար մի դեմք, սև բեղերով։ Կորացած մեջք։ Իր հայրը ուներ բոլորովին ուղիղ, երիտասարդի մեջք, և բեղեր չէր պահում… Բայց այն պահին, երբ Կուրտը ետ էր քաշում շանը և ուզում էր քաղաքավարությամբ ներողություն խնդրել անծանոթից, նա հանկարծ տեսավ այն լուսավոր աչքերն ու ժպիտը, որը ճանաչում էր ծնվելու օրից։

— Հայրի՛կ,— հազիվ ճչաց տղան։

— Կո՛ւրտ, թանկագի՜նս,—հազիվ լսվեց արձագանքը։

էր կասկածի տեղիք տալ։ Բոլորը տեսան, թե ինչպես է շունը հարձակվել իր վրա, իսկ գանգատ գրել, նշանակում է հայտնել իր անուն-ազգանունը, հասցեն, ցույց տալ փաստաթղթերը… Մինչև նա մտածում էր այդ մասին և ձևացնում, թե զննում է կծած ձեռքը, ամբոխը ետ-ետ գնաց, առաջ թողնելով մի նիհար, գեղեցիկ աչքերով կնոջ։

— Կո՛ւրտ, տղա՛ս, ի՞նչ է պատահել,— տագնապալից հարցրեց նա, դեռևս չտեսնելով ոչ տղային, ոչ ամուսնուն։ Հարևաններն արդեն հասցրել էին նրան հայտնել, որ Վոլֆը կծել է ինչ որ մարդու. բայց ահա նա



Հայրը մի կարճ, հազիվ նկատելի շարժում արեց և Կուրտը իսկույն հասկացավ. ցույց տալ, թե նա ճանաչել է հորը, չէր կարելի։ Շուրջը թշնամիներ էին։

Տղան շտապով բռնեց Վոլֆի վզին կապած թոկից և քաշեց ետ։ Եվ դա ժամանակին էր. ամեն կողմից արդեն հավաքվել էին մարդիկ։ Շնչակտուր ոստիկանը և ամերիկյան երկու պարեկները ամբոխին հրելով, մոտեցան։

— Շունը ձեզ կծե՞ց։ Ուզո՞ւմ եք տիրոջ դեմ գանգատ գրել,— դիմեց ոստիկանը Պետերին։

Կրաուսը արագորեն վերլուծեց իրադրությունը։ Գանգատից հրաժարվել, նշանակում

բարձրացրեց աչքերն ու հենց նույն վայրկյանին ճանաչեց Պետերին։

— Ա՛հ,— դուրս թռավ նրա կրծքից։ Կուրտը ամբողջ ուժով տրորեց նրա ոտքը։

— Մայրի՛կ, մեր Վոլֆը հարձակվել է այս մարդու վրա,—շտապելով, բառերը կուլ տալով խոսեց նա։

— Այո՛, այո՛, նայեցեք, խնդրեմ։— Պետերը մեկնեց ձեռքը և ցույց տվեց ոստիկանական մահակի մուգ կարմիր հետքերը։ Այդպիսի հետքեր նրա մարմնի վրա շատ կային. դրանք հեշտությամբ կարելի էր ընդունել կծածի տեղ։

— Աստվա՜ծ իմ,—բացագանչեց Մարթան։ —Այդ սարսափելի է։ Անհրաժեշտ է իսկույն

նեթ յոդ քսել, փաթաթել, եթե ոչ կարող է թարախակալել... Ես ինքս կփաթաթեմ ձեր ձեռքը։

— Հը՛մ... կփաթաթեք։ Կարող եք և փաթաթել, միայն թե արագ, թե չէ ես շտապում եմ...— բազմանշանակալից ձայնով ասաց Պետերը։

Նա նայում էր կնոջը։ Ինչպես է նա գունատվել, իսկ մազերի ճերմակ փունջը. առաջ դա չկար։ Մարթային ու որդուն՝ Կուրտին տեսնել այդպես, թեկուզ ոստիկանների հսկողության տակ, ամբոխի աչքի առաջ, այդ էլ երջանկություն էր։ Մարթան էլ իր հերթին նայում էր և ցավով նկատում Պետերի թե կորացած մեջքը, թե նրա հագի թեթև կոստյումն ու ցրտից կապտած շուրթերը։ Նա աղաչանքով ասաց.

— Ես ձեզ խնդրում եմ, գանգատ մի՛ գրեք մեզ վրա... Առանց այն էլ ես շատ հոգսեր ունեմ... Ես ինքս այս վայրկյանին կըփաթաթեմ ձեր վերքը։ Իսկ եթե շունը պատռել է ձեր կոստյումը, ես այն կկարկատեմ։ Միայն թե.... Միայն թե դրա համար պետք է, որ դուք մեզ մոտ գաք...

Նա շտապով հայացքը փոխանակեց Կուրտի հետ։ Տղայի աչքերը փայլեցին. հայրը տուն է գալու։

Եվ ահա Պետերը տանն է։ Նա հիացմունքով զննում է խոհանոցը։ Գազի կապույտ լեզվակները պարում են սալօջախի վրա և ջերմությունը թափանցում է Կրաուսի մարմինը։ Նկուղից լսվում է Վոլֆի հաչոցը. նրան փակել են. բայց շունն ամբողջ ուժով թաթերով ճանկռտում է դուռը, ուզում է դուրս պրծնել։

— Ա՛յ քեզ կատաղի արարած,— ասում է ոստիկանը։

Այո, նա այստեղ է, ամերիկյան զինվորները նույնպես։ Նրանք ամբողջ խմբով Պետերի ու Մարթայի ետևից լցվել են տուն։

Փոքրիկ խոհանոցը լի էր կողմնակի մարդկանցով։ Եվ օտար, թշնամական հայացքների տակ Մարթան ու Կուրտը պտտվում էին հոր շուրջը։ Մարթան դիտավորյալ դանդաղ էր կարում. գուցե ոստիկանն ու պարեկները ձանձրանան ու գնան։ Ոչ, նրանք չէին գնում։ Նրանք փռվել էին աթոռների վրա. նրանց համար ավելի հաճելի էր տաքանալ կրակի մոտ, քան թե հերթապահել փողոցում։

Կրաուսը ձևացրեց, թե դիտում է Մարթայի աշխատանքը։ Նա անբարյացակամ կերպով ինչ-որ բան քրթմնջաց և գլուխն օրորեց...

— Վա՞տ է կարված։ Ա՜խ, միայն թե խնդրում եմ գանգատ չգրեք,— խնդրում էր Մարթան, դեմքին վախի կեղծ արտահայտություն տալով։— Ես... Ես նույնիսկ դրա փոխարեն կարող եմ տալ իմ ամուսնու բաճկոնը։

— Հը՜մ... բաճկո՞նը։ Ես դեռ կտեսնեմ, թե դա ինչ բաճկոն է,— բարկացած ասաց Պետերը։— Ինձ լավ բաճկոն է հարկավոր, երկար ճանապարհի համար, և ոչ թե ինչ որ հնոտիներ... Միայն այդ պայմանով ես ձեզ վրա գանգատ չեմ գրի... Հապա մի տեսեք, փչացրել են իմ ամենալավ կոստյումը։

Մարթան ննջարանից բերեց նրա որսորդական տաք բաճկոնը։ «Խելո՜քս, լա՜վս»— մտածեց Պետերը։

Նա հագավ։ Ինչ փառավոր, տաք բաճկոն էր։

— Կարծես հարմար է,— ասաց նա դեմքին դեռ պահելով անբավականություն,— դե՛, ձեր բախտը բերեց, տիրուհի՛, թե չէ ես ոչ մի գնով ձեզ չէի ների։

Կրաուսը կրկին անգամ սիրով նայեց կնոջն ու որդուն և շարժվեց դեպի դուռը։

— Է՜յ, իսկ փաստաթղթե՞րդ,— հանկարծ հնչեց ոստիկանի ձայնը։

Պետեր Կրաուսը ամբողջովին կծկվեց։ Նա շրջեց գլուխը և տեսավ մահվան չափ գունատված Մարթային ու տղային.

— Ի՞նչ փաստաթղթեր,— դանդաղ հարցրեց նա հուսալով ժամանակ շահել։

— Ա՛յ սրանք, մոռացել եք կոստյումի գրպանում։ Բոլորովին քնքշացել է նոր բաճկոնի մեջ,— հեգնանքով ավելացրեց ոստիկանը և ա՜նփութորեն Կրաուսին մեկնեց ճմրթված դրամապանակը, որի մեջ մնացել էր բանտում թողնված իր հագուստի հանձնման անդորրագիրը։

Դուռը Կրաուսի ետևից փակվեց։ Վոլֆն ավելի ուժգին սկսեց ոռնալ։

— Մյուս անգամ ես նրա հախից կգամ,—

տսաց պարեկը ոտքով խփելով նկուղի պատին։

Փոքրիկ խոհանոցը դատարկվեց։ Եվ երբ վերջին անտանելի ոստիկանը հեռացավ, Կուրտն ու նրա մայրը նկուղից բաց թողեցին հավատարիմ Վոլֆին։ Մինչ այդ երբեք Վոլֆին բաժին չէր ընկել այդքան քնքուշ ու ջերմ խոսքեր, ինչքան այդ օրը։

# ՍՏՐԿՈՒԹՅԱՆ, ՍՈՎԻ ԵՎ ԲԱՆՏԵՐԻ ԵՐԿԻՐԸ

Օ. ԿԻՐՅԱՆՈՎ

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

Ստրկության, սովի և բանտերի երկիր. այսպես է անվանում Թյուրքիան ինքը՝ թյուրք ժողովուրդը։

Թյուրքիան մեր հարևանն է։ Նա Հայաստանից բաժանվում է մի ջրային շերտով, Արաքս գետով։ Արաքսի մի ափին ծաղկում է Սովետական Հայաստանը, իսկ մյուս ափը մերկ է, չոր ու արևակեզ. դա Թյուրքիան է։

Բայց այդպես չի երևա Թյուրքիան, եթե մենք նավով կտրենք Սև ծովը և մտնենք Բոսֆոր։

Գեղատեսիլ են Թյուրքիայի ափերն այնտեղ։ Առանձնապես գեղեցիկ է Ստամբուլն իր շինություններով, հարուստների չքնաղ դղյակներով, կանաչախիտ այգիներով, առատ ու պայծառ արևով և ծիծաղախիտ ծովով։

Այս բոլորը միայն հեռվից։ Մոտիկից Ստամբուլը աղքատության, կեղտի ու գործազրկության քաղաք է։ Հարուստ շինություններն ու գեղեցիկ տեսարանները, դրանք ցուցափեղկեր են, որոնց ետևում թաքցված է երկրի իսկական դեմքը։ Բայց մի՞թե հնարավոր է ցուցափեղկերով թաքցնել միլիոնավոր թյուրքերի դժբախտ վիճակը. իհարկե, ոչ։

Հենց այդ մասին էլ մենք կպատմենք։ Մենք կպատմենք, թե ինչ տեսանք Թյուրքիայում մեր սեփական աչքերով։

Մեր շոգենավը դանդաղ մտնում է Ոսկեղջյուր ծովախորշը և ուղղվում դեպի Ստամբուլի նավամատույցներից մեկը։

Նավամատույցում ուղևորներին դիմավորում են մարսատան մի քանի պաշտոնյաներ և ոստիկաններ։ Նրանք ստուգում են բոլոր ափ իջնողների փաստաթղթերը։

Վերջապես մեծ ձգձգումներից ու հարցաքննություններից հետո, մենք ազատվում ենք այդ տհաճ պաշտոնյաներից։ Մեր առջև փռվում է քաղաքը։ Կարելի է գնալ այնտեղ, բայց մենք չենք կարողանում։ Անսպասելիորեն ամեն կողմից աղմուկով մեզ վրա են թափվում բազմաթիվ երեխաներ։

— Պարո՛ն, մի փարա տվեք,— խղճալի կերպով խնդրում են նրանք։ Մեր կողմն են պարզված նիհար, ոսկրոտ ձեռքեր։ Դրանք բոլորն էլ հինգ-վեց տարեկան աղքատ երեխաներ են։ Նրանց մարմինները ծածկված են կեղտոտ ու պատառոտված շապիկներով։ Պատռվածքների արանքներից երևում են վաղուց չլվացված, վերքերով ծածկված մարմինները։ Ստամբուլում աղքատ երեխաները շատ են։

Նավահանգիստն ամենից «օգտակար» տեղն է նրանց համար։ Այստեղ գալիս են մեծ օվկիանոսային նավեր, իսկ եվրոպացիները հաճախ քացու հետ կարող են մի քանի փարա տալ։ Փարան Թյուրքիայում ամենամանր փողն է, թյուրքական հինգ փարան հավասար է սովետական մի կոպեկին։ Չնայած դրան, եթե փոքրիկ մուրացկանին մի փարա տաս, նա շատ երջանիկ կզգա իրեն։ Չէ՞ որ ֆաբրիկաներում և գործարաններում, որտեղ շատ երեխաներ են աշխատում, կես ժամ ծանր աշխատանք տանելով այդքան չի կարելի վաստակել։

Ծանր ու անհույս է թյուրքական բանվորների ու գյուղացիների կյանքը։

Ահա Ստամբուլի աղքատ թաղերից մեկը։ Ծուռ ու մութ, նեղ փողոցներ, ցածր, կավաշեն տնակներ։ Ամեն տեղ կեղտոտություն ու անմաքրություն է տիրում։ Փողոցներում թափառում են քաղցած շների



ոհմակներ, տոթ փողոցներով ծուլորեն քարշ են գալիս լռակյաց մարդիկ։ Նրանք զարմացած ու տարակուսանքով մեզ են նայում։ Այդպիսի փողոցներում եվրոպացիներ գրեթե մուտք չեն գործում։

Փողոցի մեջտեղում, ծառի տակ պառկած է մի մարդ։ Նա փաթաթված է կեղտոտ, կարկատած վերմակի մեջ։

— Այս ի՞նչ բան է,— հարցրինք մենք անցորդներից մեկին։

— Յորղանչի է,—պատասխանեց մարդը,— մեզ մոտ երկու միլիոն յորղանչի կա։

Մենք հետո իմացանք, որ «յորղանչի» (թյուրքե-

րեն «յորղան» (վերմակ) բառից), կոչում են գործազուրկ մարդկանց։ Նրանք կորցրել են աշխատանք ստանալու ամեն մի հույս։ Տանը նրանք ուտելիք չունեն, փող չունեն և վաճառելու համար նույնպես ոչինչ չունեն։ «Յորղանչիները» կանանց ու երեխաներին մուրալու են ուղարկում, իսկ իրենք փաթաթվելով միակ վերմակի մեջ պառկում են փողոցում և սպասում. ո՞վ գիտի, գուցե որևէ մեկը աշխատանքի վարձի։

Փողոցի վերջում մենք հանդիպեցինք մարդկանց մի մեծ խմբի։ Նրանք լուռ, գլխահակ կանգնած կամ նստոտած են պատի տակ, մեծ երկաթե դարբասի մոտ և ինչ որ բանի են սպասում։ Մենք մոտենում ենք այդ խմբին։ Եզրին նստած փոքրերից մեկը վախեցած թաքնվեց մեծերի ետևում։

— Նա կարծեց, թե դուք ամերիկացիներ եք,— բացատրեց մեծահասակներից մեկը, երբ մենք արդեն ծանոթացել էինք նրանց հետ։

—Ծխախոտի գործարանը փակել են,— շարունակեց նա,— որովհետև այն չկարողացավ մրցել ամերիկյան սիգարեթների հետ։ Մեր լավ ծխախոտը էժան գնում են մեզանից, իսկ հետո բերում և վաճառում են սիգարեթներ։ Երկրորդ շաբաթն է, որ գալիս և սպասում ենք ֆաբրիկայի դարբասների մոտ։ Ասում են, թե պետք է ժամանակավորապես նորից բաց անեն։



Մի փոքր լռելուց հետո, մեր զրուցակիցը շարունակեց.

—Իսկ այս տղայից մի՛ նեղացեք։ Նա էլ է այս ֆաբրիկայի բանվոր։ Նրան ամերիկացիները մի անգամ ուժեղ ծեծել են։ Այդ օրվանից նա վախենում է լավ հագնված մարդկանցից։

Հանկարծ ֆաբրիկայի դարբասները բացվեցին։ Դանդաղ դուրս եկավ մի մարդատար մեքենա, որի մեջ նստած էր մի հաստափոր մարդ։ Նա ոչ ոքի վրա չնայելով անցավ։

—Ֆաբրիկայի տերն է,— ասաց մեր ծանոթը,— վերջ։ Այսօր էլ աշխատանքի հույս չկա։

Ամբոխը քիչ-քիչ սկսեց ցրվել։ Միայն մի գունատ, հյուծված տղա պատի տակ նստած մնաց։ Նա վաղուց արդեն հիվանդ էր և ահա նա բոլորովին կորցրել է իր ուժերը։

— Իսկ ինչո՞ւ ծնողները նրան հիվանդանոց չեն տանում,— հարցրինք մենք մի մարդու։

Նա դառնորեն ժպտաց.

— Մեր երկրի հիվանդանոցներում երեխաների համար միայն 250 մահճակալ կա, իսկ հիվանդ երեխաների թիվը հարյուր հազարների է հասնում։ Եվ ինչպե՞ս հազարավորներին տեղավորես 250 մահճակալի վրա։

Երկու հարյուր հիսուն... համարյա այնքան, որքան կա միայն մեր մի հիվանդանոցում։ Ահա թե ինչու Թյուրքիայում տարեկան 400 հազար երեխա է մեռնում։ Ինչպիսի դժբախտություն... Մանուկների համար իսկական դժոխք։

Թյուրքիայում շատ քիչ երեխաներ են սովորում։ 49 հազար քաղաքներից ու գյուղերից տարրական դպրոցներ ունեն 16 հազարը։ Մնացած 33 հազար քաղաքների և գյուղերի երեխաները բոլորովին չգիտեն, թե ինչ բան է դպրոցը։

— Ինչո՞ւ ձեզ մոտ երեխաների վիճակը բարելավելու ուղղությամբ ոչինչ չի արվում,— հարցրինք մեր թյուրք ծանոթին։

— Մեր կառավարությունը երբեք չի մտածում երեխաների մասին. իսկ այժմ, երբ նա կապված է Ամերիկայի հետ, գործն ավելի է վատթարացել։

Եվ իսկապես այն, ինչ մենք իմացանք հետո, հաստատեց մեր զրուցակցի խոսքերը։ Երկիրն ամբողջովին ընկել է ամերիկյան միլիոնատերերի իշխանության տակ։ Ամերիկայից Թյուրքիա են բերվում փչացած ապրանքներ, իսկ ամենից շատ՝ զենքեր։ Ամերիկան Թյուրքիային զինում է մեր հայրենիքի վրա հարձակվելու համար։ Դպրոցների և լավ գրքերի փոխարեն երկիրը ողողված է ամերիկյան կեղծ ֆիլմերով, որոնք լի են սպանություններով։ Թյուրքիայի երեխաները, կապիտալիստների կարծիքով, պետք է լինեն բթամիտ, անխիղճ մարդիկ. Նրանցից ապագա զինվորներ են պատրաստում պատերազմի համար։

Սովորողների մեջ գողությունը, խուլիգանությունը և հարբեցողությունը սովորական երևույթ է դարձել։ Իհարկե, ոչ բոլոր երեխաներն են այդպես։ Նրանց մեջ կան նաև այնպիսիները, որոնք իրենց ծնողների

հետ մասնակցում են խաղաղության համար մղվող պայքարին։ Այդպիսիները, ճիշտ է, առայժմ քիչ են, բայց նրանց թիվն օրեցօր աճում է։

Այսպես թյուրքական երեխաները չնայած անտանելի պայմաններին, սկսում են հասկանալ, որ Թյուրքիայի ֆաշիստական կարգը իրենց կործանում է բերում։

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

Կազմեց Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

## Տոնածառի շուրջը




Ձեզ կթվա, թե այս տառերը գրված են անկանոն. բայց այդպես չէ։ Գտեք, թե ինչպես կարող եք կարդալ մանկական գրող Հ. Հայրապետյանի բանաստեղծություններից մի հատված։

## Ռեբուս



## Թվաբանական կատակներ

1. Երեք հատ հինգի միջոցով ինչպե՞ս ստանալ 2.

2. Սեղանին շարված են երեք լուցկի։ Ավելացրեք նրանց վրա երկու լուցկի և ստացեք ութ։

3. Դուք տեսնում եք իրար տակ գրված երեք թիվ.

1 1 1
7 7 7
9 9 9

պետք է ջնջել վեց թվանշան այնպես, որ մնացած թվերը կազմեն 20.

## Կրոսվորդ-վիկտորինա



Նայեցեք քարտեզին և կրոսվորդի վանդակները լրացնելով պատասխանեցեք հետևյալ հարցերին.

I. Ի՞նչ ծով է այս (հորիզոնական 5-րդ շարքը)։

II. Ի՞նչ երկու մեծ գետեր են թափվում այդ ծովը (ուղղահայաց 1-ին և 2-րդ շարքերը)։

III. Ինչպե՞ս է կոչվում այն ավտոնոմ ռեսպուբլիկան, որտեղ մեծ մասամբ տարածված է այս ծովը (ուղղահայաց 3-րդ շարքը)։

IV. Ինչպե՞ս է կոչվում այս ռեսպուբլիկայի մայրաքաղաքը (ուղղահայաց 8-րդ շարքը)։ Ցույց տվեք քարտեզի վրա։

V. Ի՞նչ քաղաք է գտնվում ծովի հյուսիսային ափին (ուղղահայաց 4-րդ շարքը)։

VI. Անվանեցեք այստեղ պատկերված գետերից մեկը, որի ընթացքը սովետական մարդիկ պետք է փոխեն։ Ինչպե՞ս է կոչվում այն ծովը, ուր ջրանցքի միջոցով կթափվեն այս գետի ջրերը (հորիզոնական 7-րդ շարքը)։

VII. Ինչպե՞ս է կոչվում հին հունը, որով անցնելու է ջրանցքի հիմնական մասը (հորիզոնական 9-րդ շարքը):

VIII Ի՞նչ անապատով կանցնի ջրանցքը (հորիզոնական 3-րդ շարքը):

IX. Ինչպե՞ս է կոչվում այն բարձրավանդակը, որ ընկած է վերոհիշյալ երկու ծովերի միջև (ուղղահայաց 6-րդ շարքը):

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը նկարիչ Հ. ՔԱՑԱԿՅԱՆԻ




Журнал „Пионер" на армянском языке Адрес редакции: Ереван ул. Маркса 21

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԽՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԵՎՈՒՆՑ Գ. *(խմբագիր)*, ՍԻՄԱԿ, ՍՈՂՈՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

*Հասցեն՝ Երևան Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-8, 2-59-08*

*ՎՖ 01992, Պատվեր 738, Տիրաժ 5000 Տպագրական 2¼ մամուլ: Ստորագրված է տպագրության 8/I 52 թ.*

*Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան Երևան Ալավերդյան փ. № 65*




### Գալիլեո Գալիլեյ

(1564—1642)

310 տարի առաջ մեռավ հռչակավոր իտալացի ֆիզիկոս և աստղաբաշխ Գալիլեյը: Գալիլեյն առաջինն էր, որ օգտագործեց հեռադիտակը: Երբ նա առաջին անգամ այդ գործիքի օգնությամբ դիտեց աստղային երկինքը, նրա աչքերի առաջ բացվեց աստղերի ու մոլորակների անսահման աշխարհը: Գալիլեյը հայտնագործեց հասարակ աչքի համար անտեսանելի շատ աստղեր: Նա պարզեց, որ մինչ այդ աստղաբաշխների համար հանելուկ հանդիսացող Հարդագողի ճանապարհը անթիվ-անհամար աստղերի մի խմբակցություն է: Գալիլեյն առաջինը դիտեց լուսնի վրա գտնվող լեռները, հայտնագործեց Յուպիտերի 4 արբանյակ-աստղերը: Գալիլեյը հաստատեց աշխարհահռչակ լեհ գիտնական Կոպերնիկոսի տեսակետը, թե Արեգակը գտնվում է մոլորակային սիստեմի կենտրոնում և Երկիրը պտտվում է նրա շուրջը: Գալիլեյը գրեց «Խոսակցություն աշխարհի երկու սիստեմների (Պտղոմեոսի և Կոպերնիկոսի) մասին» գիրքը: Այս գրքում երեք հոգի խոսում են. նրանցից երկուսը համոզիչ կերպով ապացուցում են, որ Երկիրը պտտվում է Արեգակի շուրջը, իսկ երրորդը փորձում է անհիմն ձևով հերքել Կոպերնիկոսի այդ տեսակետը: Այսպիսով Գալիլեյը ընթերցողին լիովին համոզում է, որ ճիշտ է Կոպերնիկոսի և ոչ թե Պտղոմեոսի տեսակետը: Սակայն խավարամոլ հոգևորականները Գալիլեյի գիտական պրոպագանդան համարեցին «վնասակար» և նրան դատի տվին: Դատավարությունը տևեց մի քանի ամիս: Նրանք ծերունի Գալիլեյին ստիպեցին հրաժարվել իր ուսմունքից: Մահվանից վեց տարի առաջ Գալիլեյը կուրացավ, բայց մինչև վերջին շունչը շարունակում էր աշխատել:



### Ֆ. Ֆ. Բելլինսհաուզեն

(1779—1852)

Հունվարի 25-ին լրացավ ռուս նշանավոր ճանապարհորդ-ծովագնաց Ֆ. Ֆ. Բելլինսհաուզենի մահվան 100 տարին: 1803—1806 թվերին Ֆ. Բելլինսհաուզենը մասնակցեց ռուսական առաջին շուրջերկրյա նավարկությանը: 1819—1821 թվերին նա Մ. Պ. Լազարևի հետ միասին գլխավորում էր «Վոստոկ» և «Միռնի» նավերի արշավախումբը դեպի Հարավային բևեռի շրջանը: Արշավախումբը որոշել էր հայտնագործել անհայտ հողեր և մոտենալ Հարավային բևեռին: Երկու տարվա ընթացքում Բելլինսհաուզենը հայտնագործեց 29 կղզի և 6 անգամ անցավ հարավային բևեռային շրջանը: Ֆ. Բելլինսհաուզենի արշավախումբը մեծ դժվարությունների գնով 1820 թվի հունվարի 21-ին հայտնագործեց վեցերորդ աշխարհամասը Անտարկտիդան:



Այժմ իմպերիալիստական պետությունները ուզում են տիրանալ Անտարկտիդային, բայց այս աշխարհամասը հայտնագործող ռուս խիզախ ծովագնացների հայրենիքը՝ Սովետական Միությունը Անտարկտիդայի նկատմամբ ավելի մեծ իրավունքներ ունի:

### «Ռուսական ավիացիայի հայրը»

105 տարի առաջ, 1847 թվին ծնվեց ռուս մեծ գիտնական Նիկոլայ Եգորովիչ Ժուկովսկին: Նա 70 տարեկան էր, երբ կատարվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան: Մեծ գիտնականն իր աշակերտների հետ միասին բարձր զարգացման հասցրեց ավիացիոն թռիչքի գիտությունը մեր երկրում: Նա կազմակերպեց երկու խոշորագույն ավիացիոն գիտահետազոտական հիմնարկ՝ Կենտրոնական ավիացիոն ինստիտուտը (Ցագի) և Ռազմա-օդային ուժերի ակադեմիան: Դրանք կարևոր դեր կատարեցին սովետական ավիացիայի զարգացման և հզորացման գործում:



Դեռ 1891 թվին Ժուկովսկին ապացուցեց ֆիգուրային թռիչքների, ինչպես նաև մահվան օղակի կատարման հնարավորությունը: Ավիացիայի պատմության մեջ առաջին անգամ մահվան օղակը 1913 թվականին կատարեց հռչակավոր ռուս օդաչու Պ. Ն. Նեստերովը. դրանով նա հաստատեց Ժուկովսկու տեսակետը: 1902 թվականին Մոսկվայի համալսարանի մեխանիկական լաբորատորիայում Ժուկովսկին սարքավորեց աէրոդինամիկ խողովակ: Այդ խողովակի օգնությամբ ստուգման են ենթարկվում թռիչքի օրենքները, ինքնաթիռների մոդելները և նույնիսկ ինքնաթիռները: Ժուկովսկին գրել է մոտ 180 գիտական աշխատություն, որոնք բացառիկ նշանակություն ունեն մեխանիկայի և ավիացիայի զարգացման համար:

Լենինը բարձր գնահատեց Ժուկովսկու ծառայությունները և նրան անվանեց «Ռուսական ավիացիայի հայրը»:

Գինը 2 Ռ.



ՕՒՐԱԽ ՏՕՆԱԾԱՌ

Ֆոտո Հ. ՀԵՔԻՄՅԱՆԻ